

Լրացավ Կարլ Մարքսի ծննդյան 140 տարին: Ամբողջ աշխարհի աշխատավորությունը սիրով ու հարգանքով նշեց գիտական կոմունիզմի հիմնադրի, պրոլետարիատի մեծ առաջնորդի հոբելյանը:

Մարքսին շատ էին հալածում իր ժամանակ: Իսկ ինչո՞ւ էին հալածում: Նա իր բարեկամ Ֆրիդրիխ Էնգելսի հետ միասին բոլոր երկրների պրոլետարներին կոչ էր անում միանալ՝ կապիտալիստական կարգերի դեմ, իրենց ազատությունը սեփական ձեռքերով կռվելու համար:

Ինչպես անգլիացի մեծ գիտնական Չարլզ Դարվինը հայտնաբերեց օրգանական աշխարհի զարգացման օրենքը, այնպես էլ Մարքսը գտավ մարդկության պատմության զարգացման օրենքը: Նա ապացուցեց, որ պատմությունը տերերի և ստրուկների, ֆեոդալների ու ճորտերի, կապիտալիստների և պրոլետարների դասակարգերի պայքարի պատմությունն է:

Իր ամբողջ կյանքում Մարքսը համառորեն ուսումնասիրում էր այն ամենը, ինչ ստեղծել էր մարդկությունը պատմության ընթացքում: Նա շատ էր սիրում հատկապես լեզուներ սովորել: 50 տարեկան հասակում Մարքսը սովորեց ռուսերենը և սիրով կարդում էր Պուշկինի և այլ հեղինակների գործերը:

Մարքսը մեծ մտածող էր. Նա հանճարեղ տնտեսագետ էր, փիլիսոփա, իրավագետ, պատմաբան, մաթեմատիկոս, լեզվաբան: Մարքսը շատ աշխատասեր էր. իր հռչակավոր «Կապիտալ» աշխատությունը գրեց 40 տարում:

Առաջավոր մարդկության մեծ ուսուցչի մահից հետո, Նրա դրոշը հաղթականորեն առաջ տարան Էնգելսը և Լենինը:

Մարքսի ստեղծած ուսմունքը՝ Մարքսիզմը անմահ է և կապրի դարեդար:

digitised by A.R.A.R.@

№ 5 1958 թ.
ՄԱՅԻՍ




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
30-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ



ՄԿՐՏԻՉ ԱՐՄԵՆ

Աշխարհի ամենագույնզգույն օրն էր Մայիսի մեկը։ Ամեն տեղ կարմիր դրոշակներ, տեսակ-տեսակ ծաղիկներ, պատկերազարդ պլակատներ, ամեն գույնի հագուստներ հագած ֆիզկուլտուրնիկներ, զարդարված ավտոմեքենաներ... Նույնիսկ ձայներն ու հընչյունները կարծես գույնզգույն լինեին. երգեր, նվագ, հրահանգի ձայներ, «ուռա՜», «կեցցե՜», «մայրի՛կ, պաղպաղակ եմ ուզում» և այլն, և այլն։

Երեխաներից ոմանք զբոսնում էին՝ ձեռքներին փոքրիկ դրոշակներ բռնած, ոմանք օդապարիկներով, որոնց թելերը պինդ բռնել էին մատների արանքում։ Մարդկանց հետ միասին մայիսի տոնի համար ուրախացել էին նաև օդապարիկները։ Եթե նրանք լեզու ունենային, ապա պիտի ասեին իրենց բռնող երեխաներին.

— Դե, շուտ-շուտ քայլեցեք, տեղից-տեղ անցեք, որպեսզի ես ավելի շատ բան տեսնեմ, ոչինչ բաց չթողնեմ...

Մի կապույտ օդապարիկ, որ բռնել էր մի փոքրիկ աղջիկ, ամենից շատ էր շտապում։ Աղջիկը կանգնել էր իր համար, ոչ մի տեղ չէր գնում, իսկ դա բոլորովին դուր չէր գալիս օդապարիկին։ Նա շատ նոնվեց դեսուդեն, ձգվեց, կարծես ուզում էր իր ետևից ձգել նաև աղջկան։ Բայց աղջիկը տեղից չէր շարժվում։

Վերջապես օդապարիկն այսպես որոշեց. եթե հնարավոր չէ ոչ մի տեղ գնալ, ուրեմն՝ հարկավոր է ձգվել դեպի վեր։ Բարձրից կարելի է ավելի շատ բան տեսնել...

Օդապարիկը ձգվեց, ձգվեց և հանկարծ դուրս պրծավ աղջկա ձեռքից։

— Վա՜յ, օդապարիկս,— բղավեց աղջիկը, բայց օդապարիկն ազատություն ստանալուց ուրախացած, արագ թռավ հեռացավ, իր ետևից տանելով բարակ թելը։

Իսկապես որ, բարձրից շատ ավելի բան էր երևում։ Եվ որքան ավելի էր բարձրանում, այնքան ավելի շատ բան էր տեսնում կապույտ օդապարիկը։

Սկզբում նա հասավ մեծ մարդկանց գլուխներին և խիստ վախեցավ, որ նրանք կարող էին բռնել իրեն։ Բայց նրանք չկարողացան բռնել։ Այնուհետև օդապարիկը բարձրացավ, հասավ ծաղկեփնջերով զարդարված պատշգամբներին, լուսամուտներին, որտեղից դուրս էին նայում բազմաթիվ մարդիկ։

— Տեսե՛ք, տեսե՛ք,— բղավում էին նրանք,— օդապարի՜կ, օդապարի՜կ...

Օդապարիկն ուրախ էր, որ ոչ միայն ինքն է տեսնում շատ բան, այլ իրեն էլ են շատերը տեսնում։ Նա ուզում էր կանգ առնել, ուշադիր նայել մարդկանց, նայել սենյակների խորքը, բայց իր կամքից անկախ սրարշավ բարձրանում էր ավելի և ավելի վեր։

Վերջապես այդ բանն սկսեց անհանգստացնել օդապարիկին։ Նա շարունակ ավելի էր հեռանում մարդկանցից ու գետնից։ Այժմ նրա տակ միայն շենքերի թիթեղածածկ կտուրներն էին։ Մի անգամ էլ օդապարիկն անցավ պատշգամբների և լուսամուտների մոտով, բայց դա քաղաքի միակ բարձրաբերձ շենքն էր, ավելի շուտ՝ շենքի ամենավերին հարկերը։

— Չե՛մ ուզում հեռանալ մարդկանցից, չե՛մ ուզում հեռանալ մայիսի տոնից,— բղավեց օդապարիկը, բայց նրան ոչ ոք չլսեց, որովհետև նա մենակ էր, նրա շուրջը ոչ ոք չկար։ Նա նայեց ցած։ Մարդիկ մատով իրեն էին ցույց տալիս, բայց, ինչպես երևում էր, այլևս չէին տեսնում նրան։ Ա՜յ, եթե կար-

մի լիներ, դեռ շատ ժամանակ կարող էր երևալ։ Բայց օդապարիկը կապույտ էր և նրա գույնը ձուլվել էր երկնքի գույնին։

Նա հիմա շատ էր զղջում, որ դուրս էր պրծել փոքրիկ աղջկա ձեռքից։ Ինչպիսի՜ ուրախությամբ նա կվերադառնար այնտեղ, եթե կարողանար...

— Դե հերիք է, էլ չեմ ուզում բարձրանալ,— բարկացած ասում էր նա, ինքն էլ չգիտենալով, թե ում վրա է բարկանում։ Նրա մեջ լցված թեթև գազը շարունակ ավելի ու ավելի արագ էր բարձրացնում նրան։

Հանկարծ օդապարիկը լսեց մի ծանոթ հնչյուն և ուրախացած նայեց։ Նրա մոտով սլացավ մի ինքնաթիռ։ Օդաչուն նկատեց նրան, ձեռքով արեց

— Բռնի՛ր ինձ,— բղավեց օդապարիկը, բայց ինքնաթիռն անցավ։

Երբ օդապարիկը նորից նայեց ներքև, նրա սիրտը կծկվեց վշտից։ Ներքևում այլևս ոչինչ չէր կարելի զանազանել։ Հեռո՜ւ, շատ հեռու, ինչպես մանկական գրքույկի նկար, երևում էր ամբողջ քաղաքը՝ հազիվ մի սեղանի չափ։

— Ետ եմ ուզում դառնալ,— լաց եղավ օդապարիկը,— ուզում եմ վերադառնալ երեխաների մոտ...

Բայց ոչ ոք չէր կարող օգնել նրան։ Օդապարիկն այդ գիտեր և դրա համար լաց էր լինում ավելի և ավելի ուժեղ։ Վերջապես նա այնքան լացեց, որ տրաքվեց և գազը դուրս ցնդեց նրա միջից։ Նույն րոպեին օդապարիկն զգաց, որ ինքը խիստ ծանրացավ և սկսեց սլանալ ներքև։

— Վերադառնո՜ւմ եմ,— ուրախ բղավեց նա։

Քիչ հետո օդապարիկը պատռված, թորշոմած, իր գեղեցկությունը կորցրած, թրմփալով ընկավ մի լուսամուտի քիվի։ Ներքևում փողոցն էր։ Մայթերով անց ու դարձ էին անում մարդիկ, երեխաները՝ ձեռքներին փոքրիկ դրոշակներ բռնած։ Նրանք ուրախ երգում էին, ծիծաղում, և օդապարիկն իր քիվի վրայից տեսնում էր բոլորին ու նրա սիրտը լցվում էր ցնծությամբ։ «Ինչ լա՜վ է, որ նորից երկրի վրա եմ»,— մտածում էր նա։ Եվ իրոք, թեև նրան ոչ ոք չէր տեսնում, նրա վրա ոչ ոք ուշադրություն չէր դարձնում, նա գոհ էր։



6957-2.2




## ՆԵՏ ՈՒ ԱՂԵՂԻ ԵՎ ԱՅՆ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉՊԵՍ ԵՐԿԱՐ ՄԱԿԱՐԸ ՆԵՂԱՑԱՎ ՈՍՏԻԿ ԽՈՍՏԻԿԻՑ

Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

*— Խոստիկ, մտածիր է՛, ինչպե՞ս անենք, խնդրիս զոռ եմ տալիս, զոռ, բայց բան դուրս չի գալիս։ Դու էլ չես մտածում...*

*Խոստիկն առոք-փառոք ձգվել էր բազմոցին, իսկ Մակարը նրա ոտքերի մոտ, փոքրիկ աթոռակին նստած, սևագրության տետրն ու մատիտը ձեռքին առած, աղերսալից հայացքով նայում էր ընկերոջը։*

*— Խոստիկ...*

*— Ի՞նչ ես դու էլ կպել ինձանից՝ խնդիրը, հա խնդիրը... չես թողնում, թե մարդ մի բան մտածի։*

*— Ախր, Խոստիկ, դեռ էնքան դասեր ունե՛նք... բնագիտություն, աշխարհագրություն, ռուսաց... Բա ե՞րբ պիտի անենք։ Դու քեզ համար պառկել ես, իսկ ես խնդիրը չեմ հասկանում։ Հապա մի հատ էլ կարդամ, լսիր... «Երկու որսորդական բրիգադներից առաջինը երեք օրվա ընթացքում որսաց...»*

*— Ես հենց էդ մասին էլ մտածում եմ էլի. մտածում եմ՝ ինչքա՜ն լավ կլիներ, եթե մենք էլ այդ որսորդական բրիգադներից՝ մեկում լինեինք։*

*— Լավ կլիներ, Խոստիկ,— կարճ կապելու համար շտապեց համաձայնվել Մակարը,— հիմի դու այն ասա, թե առաջին հարցով ինչ պիտի անենք։*

*— Թո՛ւ... Ինչ անհամ մարդ ես, ա՛յ Երկար... ես քեզ հետ հետաքրքիր բաների մասին եմ խոսում, իսկ դու՝ խնդիրը, հա խնդիրը։*

*Երկար Մակարը վիրավորված լռեց, ապա նորից կուչ եկավ տեղում և խոնարհվեց խնդրի վրա։*

*Խոստիկն էլ իր մտքերի մեջն ընկավ։ Ճիշտ որ, ինչ ուզում է լինի, վաղվա դասերը հարկավոր է պատրաստել։ Երեկ ինքն էլ, Մակարն էլ «երկուսներ» են ստացել և իրենց ծնողներին խոստացել*

5059-58

digitised by A.R.A.R.@

են, որ սրանից հետո լավ պետք է սովորեն և հիմա հանկարծ, ա՛յ թե խայտառակություն կլինի, եթե... Թարսի նման էլ իրենց խոսման հաջորդ օրն այնքան դաս են տվել, որ... Ա՛յ, եթե հնարավոր լիներ, որ մի օր Մակարը սովորեր դասերը, մյուս օրը՝ ինքը։ Ի՞նչ կա որ, ընկերներ են, էլ ի՞նչ մոտիկ ընկերներ, որ ամեն գործում միմյանց չօգնեն։ Օրինակ, այսօր ինքը տրամադրություն չունի պարապելու։ Ի՞նչ մի վատ բան կլիներ, եթե Մակարն իր փոխարեն սովորեր դասերը։

Շատ, շա՜տ մտածեց Խոստիկը, այնինչ խեղճ Մակարը լարումից քիթը փնփնացնելով աշխատում էր մի կնճիռ խնդիրը լուծել, բայց բան չէր ստացվում։

Հանկարծ Խոստիկի գլխում մի միտք փայլատակեց։ Նա ուրախացած վեր թռավ տեղից ու բացականչեց.

— Մակար, հապա մի վեր կաց տեղիցդ, մի աթոռ բեր...

— Ինչո՞ւ, է՛...

— Բան եմ մտածել, շատ լավ բան, դու աթոռը բեր, դիր պահարանի հայելու դիմաց, կիմանաս...

Մակարը, որ սովորել էր անխոս հնազանդվել ընկերոջը նրա բոլոր օյինբազությունների մեջ, առանց այլևս հակաճառելու, վեր կացավ, մի աթոռ բերեց և դրեց պահարանի մեծ հայելու դիմաց։

— Նստիր, — անմիջապես կարգադրեց Խոստիկը։

Մակարը նստեց և տարակուսանքով սկսեց դիտել իր անդրադարձումը հայելու մեջ։

Խոստիկը կանգնեց Մակարի և հայելու միջև։

— Ա՛յ թե բոյ ունես հա՜, — անմիջապես ոգևորված բացականչեց նա, — հլա մի տես, Մակար ջան, դու՝ նստած, ես՝ կանգնած, ճիշտ մի բոյի ենք։

Մակարն անմիջապես վիրավորված վեր կացավ տեղից։

— Ես էլ կարծեցի, թե մի խելոք բան ես ասելու, իսկ դու ծեռ ես առնում ինձ...

Խոստիկը բռնեց նրա ձեռքից և նորից հրեց դեպի աթոռը։

— Սպասիր է՛, Երկար ջան, նստիր, ազնիվ խոսք, մի լավ բան եմ մտածել ու իսկի էլ ծեռ չեմ առնում։

Մակարը նստեց ու ձեռքերը դրեց իր սրանկյուն ծնկներին։

— Մակար ջան, — սկսեց Խոստիկը խրատական տոնով, — ընկերությունը ամեն բանում պետք է լինի, չէ՞, թե չէ էլ ի՞նչ ընկերներ որ... Համաձա՞յն ես...

— Հը՛, — անորոշ պատասխանեց Մակարը, որը, ճիշտն ասած, բավականին փորձերից ելնելով, ոչ մի լավ բան չէր սպասում ընկերոջից։

Դե հիմի տես, Երկար ջան, ասենք, ես էսօր հավես չունեմ դաս սովորելու։ Դու էսօր իմ փոխարեն կսովորես...

— Էդ ինչպե՞ս կլինի...

— Սպասի՛ր է՛, մի վերջացնեմ, տես, թե ինչ լավ բան եմ մտածել։ Դու իմ փոխարեն սովորում ես, իսկ ես ժամանակս անց եմ կացնում այնպիսի բանի վրա, որ ինձ էլ է օգուտ, քեզ էլ։ Ա՛յ, օրինակ, խնդրի վրա մտածելիս ես որոշեցի, որ մենք որսորդներ դառնանք։ Ի՜նչ հետաքրքիր կյանք է, գիտե՞ս, որսորդներինը։ Ամբողջ ժամանակ իրենց քեֆին ման են գալիս անտառներում, որտեղ մթնեց, էնտեղ էլ քնում են, ի՜նչ գազան ասես, որ չեն խփում... գիշատիչներին ոչնչացնելու համար պարգևների են արժանանում... Իմ կարծիքով, ամենահետաքրքիր ու հեշտ կյանքը որսորդներինն է...

— Դա ի՞նչ կապ ունի... — փորձեց ընկերոջ ճառն ընդհատել Մակարը, բայց Խոստիկը նրան չթողեց խոսել։

— Սպասի՛ր է՛, ինչ անհամբերն ես... Ես ու դու արձակուրդներին կգնանք որսի...

— Բա մեզ ո՞վ կտա հրացան...

— Ինչպես երևում է, քո անունը ոչ միայն Երկար պետք է լիներ, այլև անհամբեր Մակար, — բարկացավ նրա վրա Խոստիկը։ — Չես թողնում, որ խոսքս վերջացնեմ։ Մենք որսի կգնանք նետ ու աղեղով...



digitised by A.R.A.R.@

— Նետ ու աղեղո՞վ...

— Ի՞նչ կա որ։ Շատ առաջներում մարդիկ ինչպե՞ս էին նետ ու աղեղով մեծ-մեծ գազաններ որսում։ Մենք նրանցից ինչո՞վ ենք պակաս։ Ես հիմիկվանից երկու հատ լավ աղեղ կպատրաստեմ, ու շա՜տ, շա՜տ նետեր... Հիմի դո՛ւ ասա, բա հետաքրքիր բան չեմ մտածո՞ւմ...

— Հետաքրքիր բան ես մտածում, — ակամայից համաձայնվեց Երկար Մակարը։ Ասենք նա էլ կամաց-կամաց սկսել էր հրապուրվել ընկերոջ երևակայությամբ։

— Դե, տեսնո՞ւմ ես, — հաղթական բացականչեց Խոստիկը։ — Բա որ ասում էի՞։ Հիմի տես, ես էդպես օգտակար գործով պիտի զբաղվեմ, բա ես ժամանակ ունե՞մ դասեր սովորելու։ Քանի ես զբաղված եմ, իմ փոխարեն դու կսովորես...

— Ինչպե՞ս կլինի...

— Ես մտածել եմ։ Դե ինքդ էլ տեսնում ես, Մակար ջան, որ ես կանգնած, իսկ դու նստած, ճիշտ մի բոյի ենք։

— Հետո՞...

— Հետո էն, որ դու իմ փոխարեն դասերը կըսովորես, դասարանում դու հո իմ հետևն ես նստում։ Երբ որ ինձ դաս կհարցնեն, ես վեր կըկենամ, առանց ձայն հանելու բերանս բաց ու խուփ կանեմ, իբր թե պատասխանում եմ, իսկ դու ձայնդ իմ ձայնին նմանեցնելով դասը կպատասխանես։ Այդ ժամանակ իմ ու քո բերանները հավասար բարձրությունների վրա կգտնվեն, և ուսուցիչը կկարծի, թե ես եմ դասը պատասխանում։

— Բա որ իմանան, ի՞նչ կանեն...

— Ի՞նչ պիտի անեն, ինչպե՞ս պիտի իմանան։ Հո երեխաներից մեկն ու մեկը վատություն չի անի՝ իմաց տա։ Իսկ դասատուն դիմացից է նայում, չի տեսնի։ Բա լավ չե՞մ ասում, ի՞նչ կարիք կա, որ երկուսս էլ դասերով զբաղվենք, քանի որ մեկս էլ շատ լավ յոլա կտանի, իսկ այդ ժամանակ մյուսս օգտակար գործեր կանի։

Վերջիվերջո Պստիկ Խոստիկը կարողացավ համոզել Երկար Մակարին.

— Խնդրի վրա մի մտածի, կարտագրենք մեկն ու մեկից։ Դու հիմա ընագիտությունն ու պատմությունը սովորիր, որ վաղը պատասխանես իմ տեղն էլ, քո տեղն էլ...

* * *

— Դե հիմա փորձենք, — առաջարկեց Խոստիկը։ — Ենթադրենք, թե բնագիտության դասն են ինձ հարցրել։ Ես տոքի եմ կանգնել և բերանս բաց ու խուփ եմ անում, իբր պատասխանում եմ, իսկ դու խոսում ես։ Դե, սկսում ենք։



Նկ. Գ. ԱՂԱՍՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

Երկար Մակարը նստել էր պահարանի հայելուց մի քանի քայլ հեռավորության վրա դրված աթոռին, իսկ Խոստիկը կանգնել էր նրա ու հայելու միջև։

— Ես այսպես ձեռքով նշան եմ անում քեզ ու սկսում եմ... Դե...

Խոստիկը սկսեց անձայն բաց ու խուփ անել բերանը, իսկ Երկար Մակարը խուլ ձայնով սկսեց. «Զորքուտանիների դասին են պատկանում...»

— Սպասի՛ր, սպասի՛ր, քա ես էդպես այլանդակ ձայն ունե՞մ։ Դու աշխատիր իմ ձայնին նմանեցնել ձայնդ։

— «Զորքուտանիների դասին են պատկանում...»

— Ջեղա՜վ, — նորից դժգոհեց Խոստիկը։

— Ինչո՞ւ։

— Դեռ հարցնում ես՝ թե ինչո՞ւ։ Ես բերանս բաց եմ անում, իսկ դու փակում ես, ես փակում եմ, իսկ դու բաց ես անում։ Բա դա եղա՞վ...

— Բա ինչպե՞ս անեմ...

Խոստիկը նույնպես սկսեց մտածել. ինչպե՞ս անել։ Դա անսպասելի արգելք էր, որը նա չէր նախատեսել։

— Է՛հ, Երկար ջան, ինչպես երևում է, մենք մի որոշ ժամանակ պետք է վարժվենք, որպեսզի միատեսակ բաց անենք մեր բերանները։ Դե դու սկսիր դասը, ես քեզ հետ միաժամանակ կկրկնեմ։

— «Զորքուտանիների դասին են պատկանում...» — սկսեց Մակարը։

— «Զորքուտանիների դասին են պատկանում...» — կրկնեց Խոստիկը։

* * *

Մյուս օրը բնագիտության դասատու Քերոբյանը մի տարօրինակ բան տեսավ, երբ դասը հարցրեց Խոստիկին։

Խոստիկը ոտքի կանգնեց և սկսեց բերանը բաց ու խուփ անել, իսկ նրա փոխարեն ամբողջ ուժով սկսեց ճչալ հաջորդ նստարանին նստած Մակարը։ Ամբողջ դասարանը փութկոցները հազիվ էր զսպում, մինչդեռ ուսուցիչը մի որոշ ժամանակ տարակուսանքով նայում էր այդ տեսարանին։

Վերջապես նա այլևս չկարողացավ համբերել և սաստեց Մակարին.

— Մակա՛ր, մի՛ խանգարիր, թող, որ ընկերդ պատասխանի։

Բայց Խոստիկը ինչ-որ նշան արավ Մակարին, և վերջինս նորից շարունակեց։ Խոստիկը շըրջվեց և թեքվելով դեպի ընկերը, ցածր ձայնով ասաց. «Պետք չի»։ Բայց Մակարն այնպես էր շշմել, որ միանգամից նրան չհասկացավ։ Քերոբյանի զարմանքին չափ ու սահման չկար։

— Սա ի՞նչ է, — առանց ձայնը բարձրացնելու, բայց խորին զայրույթով խոսեց նա, — դու, Մակար, այժմ դուրս գնա դասարանից, իսկ հետո, դասամիջոցին ինձ կբացատրես, թե ինչ է նշանակում այս ամենը։

Ամենից վատն այն էր, որ ընկեր Քերոբյանը պահանջեց Մակարի օրագիրը և վարքից «2» նշանակեց նրան։

Երբ Մակարը դուրս գնաց դասարանից, Քերոբյանը ասաց.

— Իսկ հիմա, Խոստի՛կ, պատասխանիր, այլևս քեզ խանգարող չկա։

Խոստիկը կարեկցանքով լի մի հայացք նետեց դռան կողմը, որի ետևում անհետացավ իր ընկերոջ բարձր կերպարանքը, ապա մի խոր հոգոց արձակեց և... սկսեց դասը պատմել։

Խոստիկն այնքան սահուն էր պատմում դասը, որ նրան չէին հուշում նույնիսկ Գեղամն ու Վարդուհին, որոնք, ինչպես հայտնի է, տառապում են հուշելու հիվանդությամբ։

Երբ Խոստիկը պատմեց-վերջացրեց, Քերոբյանը նրա օրագրում նշանակեց «4»։

* *

Ի՞նչ խոսք, որ դասամիջոցին Մակարն այդպես էլ չկարողացավ ոչ մի խելքը գլխին պատասխան տալ, և մինչ Քերոբյանը նրանից բացատրություն էր պահանջում, թե ինչո՞ւ է դասը խանգարել, Մակարը գլուխը կախած իր կոշիկների ծայրերին էր նայում և մինչև ականջների ծայրերը կարմրածլում։

— Ես տեսնում եմ, որ դու, Մակար, գոնե ամաչում ես, — ի վերջո ասաց Քերոբյանը։ — Դա էլ մի բան է։ Դե, ուրեմն խոստացիր, որ այլևս այդպիսի բան չես անի։ Խոստանո՞ւմ ես։

Եվ քանի որ խոստանալ բառն այդ միջոցին Մակարին հիշեցնում էր իր մտերիմ ընկերոջ անունը, որին նա այդ պահին համարյա թե ատում էր, Մակարը գերադասեց միայն գլուխը դրականորեն շարժել։

Հենց որ Քերոբյանը հեռացավ, անմիջապես Մակարին մոտեցավ Խոստիկը։

— Երկար ջան, — սկսեց նա, բայց Մակարն առանց ընկերոջը լսելու, շրջվեց և սկսեց հեռանալ։

— Ախր, Մակար ջան, մի լսիր, տես, թե ի՞նչ եմ ասում, է...

Բայց Մակարն առանց մի խոսք ասելու շտապում էր ընկերոջից հեռանալ ամեն անգամ, երբ վերջինս փորձում էր նրան մոտենալ և հետը խոսել...

Այդպես կրկնվեց նաև հետագա դասամիջոցներին։



digitised by A.R.A.R.@

Դասերն արդեն վերջացել են։

Լայն-լայն քայլեր գցելով, դեմքին վճռական արտահայտություն, փողոցով քայլում է Երկար Մակարը։ Նրա ետևից հազիվ-հազ հասնելով, բոլորովին շնչակտուր եղած, վազում է Պստիկ Խոստիկը։

— Ախր, Մակար ջան, հասկացիր է՛... Դու կարծում ես, թե ես էդ բոլորը արեցի քեզ ձեռ առնելու, քեզ ծաղրելու համա՞ր, բայց, ազնիվ խոսք, ես ուզում էի նետ ու աղեղ սարքել, որ արձակուրդներին որսի գնանք, էնքան լա՜վ կլինի, ա՛յ, կտեսնես, Մակար ջան, կգնանք որսի... Իսկ էն, որ դասը կարդացած պատասխանել, ազնիվ խոսք, չգիտես, հանկարծ ստացվեց... Երբ որ ընկեր Բեգլարյանը ինձ հարցրեց, ու դու սկսեցիր, ես անմիջապես հասկացա, որ դասը գիտեմ, դեռ հլա քեզ էլ նշաններ արեցի, ասեցի, որ լռես, բայց դու ինձ չհասկացար։ Երևի էն ժամանակ, որ փորձեր էինք անում բերաններս միասին բանալու, ես դասս սովորել էի արդեն, բայց ինքս էլ գլխի չէի ընկել... Ազնիվ խոսք...

Բայց Երկար Մակարը ոչինչ չէր լսում, նա հետզհետե արագացնում էր քայլերը, ամաչելով, որ Պստիկ Խոստիկն իր ետևից այդպես վազ տա...




ՎԻԼՅԱՄ ՍԱՐՈՅԱՆ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Հին լավ օրերից մի օր, երբ ես ինը տարեկան էի, և աշխարհը լի էր ամեն տեսակ հրաշալիքներով, իսկ կյանքը դեռևս հաճելի ու խորհրդավոր երազ էր, իմ հորեղբորորդի Մուրադը, որին խելառ էին համարում բոլորը՝ բացի ինձանից, առավոտյան ժամը չորսին եկավ մեր բակը։ Թախելով սենյակիս լուսամուտը, նա արթնացրեց ինձ։

— Արա՛մ, — ասաց նա։

Անկողնից վեր թռա և լուսամուտից դուրս նայեցի։

Չէի կարող տեսածիս հավատալ։

Արևն ուր որ է, պետք է դուրս նայեր երկրի ծայրից։

Դեռևս առավոտ չէր, բայց ամառ էր, և բավականին լույս կար, որպեսզի զգայի, թե երազի մեջ չեմ։

Իմ հորեղբորորդի Մուրադը նստել էր մի գեղեցիկ, սպիտակ ձի։

Գլուխս լուսամուտից դուրս հանեցի և տրորեցի աչքերս։

— Այո՛, — ասաց նա հայերեն, — ձի է։ Դու երազի մեջ չես։ Շտապիր, եթե ուզում ես ձի հեծնել։

Ես գիտեի, որ հորեղբորորդի Մուրադը կարողանում է կյանքը վայելել ավելի լավ, քան ուրիշ որևէ մեկը, որ երբևէ սխալմամբ աշխարհ է եկել։ Բայց այս մեկին չէի կարող հավատալ նույնիսկ ես։

Նախ՝ իմ ամենավաղ հիշողությունները կապված էին ձիերի հետ, և իմ տենչանքը ձի հեծնելն էր։

Սա հրաշալի մասն էր։

Բայց երկրորդ՝ մենք աղքատ էինք։

Այս այն մասն էր, որ թույլ չէր տալիս ինձ հավատալ իմ տեսածին։

Մենք աղքատ էինք։ Մենք փող չունեինք։ Մեր ամբողջ տոհմը ծայրահեղ աղքատ էր։ Գարօղլանյանների ցեղատոհմի ամեն մի ճյուղը աշխարհում ապրում էր անհեթեթ և զարմանալի չքավորության մեջ։ Ոչ ոք, նույնիսկ մեր ընտանիքի ծերերը, չէին կարող հասկանալ, թե որտեղից էինք մենք բավարար փող ճարում, մեր փորը ուտելիքով լցնելու համար։ Ամենակարևորը, սակայն այն էր, որ մենք հռչակված էինք մեր ազնվությամբ։ Մենք մեր ազնվությամբ հռչակավոր էինք եղել շուրջ տասնմեկ դարեր ի վեր, նույնիսկ այն ժամանակ, երբ ամենահարուստ ընտանիքն էինք համարվել մի երկրում, որը սիրում էինք կարծել, թե ամբողջ աշխարհն է։

Մենք նախ հպարտ էինք, հետո ազնիվ, իսկ բացի դրանից հավատում էինք ճշմարտին և արդարին։ Մեզանից ոչ մեկը աշխարհում ոչ ոքի չէր շահագործել, ուր մնաց գողանար։

Հետևաբար, թեև ես տեսնում էի ձին, այնքան հրաշալի, թեև ես զգում էի նրա հոտը, այնքան



digitised by A.R.A.R.@



ախորժելի, թեև լսում էի շնչառությունը, այնքան արբեցնող, բայց չէի կարող հավատալ, որ ձին որևէ կապ ունենար իմ հորեղբորորդի Մուրադի կամ ինձ, կամ մեր ընտանիքի որևէ քնած, թե արթուն անդամի հետ։ Քանի որ իմ հորեղբորորդի Մուրադը չէր կարող ձին գնած լինել, և եթե չէր կարող գնած լինել, պետք է այն գողացած լիներ։ Բայց ես չէի կարող հավատալ, որ նա գողացել էր։

Դարօղլանյան ընտանիքի ոչ մի անդամ գող լինել չէր կարող։

Ես նախ նայեցի հորեղբորորդուս, հետո՝ ձիուն։ Նրանցից յուրաքանչյուրի մեջ անմեղ հանգստություն և հումոր կար, որը և ուրախացրեց և վախեցրեց ինձ։

— Մուրադ, — ասացի ես, — որտեղի՞ց գողացար այդ ձին։

— Եթե ուզում ես ձի նստել, լուսամուտից դուրս թռիր, — ասաց նա։

Ուրեմն ճիշտ էր։ Նա գ ո ղ ա ց ե լ էր ձին։ Այդ մասին ոչ մի կասկած։ Նա եկել էր ինձ հրավիրելու ձի նստել, կամ ոչ. ինչպես որ կուզեի։

Դե, ինձ թվում էր, որ մի անգամ հեծնելու համար ձի գողանալը նույնը չէ, ինչ ուրիշ բան գողանալը՝ ասենք փողը։ Որքան ես գիտեմ, գուցե այդ բոլորովին էլ գողանալ չէր։ Եթե դու գժվում ես ձիու համար, ինչպես հորեղբորորդիս՝ Մուրադը ու ես էինք գժվում, դա գողանալ չէ։ Դա գողանալ չէր լինի, քանի դեռ մենք ձին չէինք ծախել։ Մի բան, որ վստահ էի, երբեք չէինք անի։

— Սպասիր հագնվեմ, — ասացի ես։

— Շատ լավ, — ասաց նա, — բայց շտապիր։

Ես նետվեցի դեպի շորերս, լուսամուտից ցատկեցի բակը և թռա ձիու գավակին՝ հորեղբորորդուս՝ Մուրադի ետևը։

Այդ տարի մենք ապրում էինք քաղաքի ծայրամասում՝ Վոլնըտ փողոցի վրա։ Մեր տան ետևում արտերն էին, այգիներ, մրգաստաններ, ոռոգման առուներ և դեպի գյուղերը տանող ճանապարհներ։ Երեք րոպեից պակաս ժամանակում մենք հասանք Օլիվ փողոցը, իսկ այնուհետև ձին սկսեց արշավել։ Օդը թարմ էր և շնչելը՝ հաճելի։ Հրաշալի էր զգալ ձիու վազքը։ Հորեղբորորդիս՝ Մուրադը, որ մեր ընտանիքի ամենախենթ անդամներից էր համարվում, սկսեց երգել։ Այսինքն՝ սկսեց գոռալ։

Յուրաքանչյուր ընտանիք ունենում է ինչ-որ խենթ երակ։ Հորեղբորորդիս՝ Մուրադը մեր գերդաստանի այդ խենթ երակի բնական շառավիղն էր։ Նրանից առաջ գալիս էր իմ Խոսրով հորեղբայրը, որը մի վիթխարի, սև մազերով ծածկված հուժկու գլխով և Սան Ջոակին հովտի ամենահաստ բեղերով մի մարդ էր, բնավորությամբ այնքան վայրագ, այնքան դյուրաբորբոք, այնքան անզուսպ, որ կտրում էր որևէ մեկի խոսքը՝ բղավելով. «Վնաս չունի, ուշադրություն մի դարձրու»։

Այդքան միայն, անկախ այն բանից, թե ով ինչ է խոսում։ Մի անգամ, նրա Առաք որդին վազել էր ութ կվարտալ մինչև վարսավիրանոց, որտեղ հայրը բեղերն էր հարդարել տալիս, ասելու, որ իրենց տունն այրվում է։ Խոսրովը ուղղվում է տեղում և բղավում. «Ոչինչ, ուշադրություն մի դարձրու»։ Սափրիչը միջամտում է. «Բայց տղան ասում է, որ ձեր տունն է այրվում»։ Այդ ժամանակ Խոսրովը բղավում է. «Հերի՛ք է, ասում եմ վնաս չունի»։

Իմ հորեղբորորդի Մուրադը այս մարդու բնական շառավիղն էր համարվում, թեև Մուրադի հայրը Զոհրաբն էր, որը գործնական մարդ էր և ուրիշ ոչինչ։ Այդպես էր մեր տոհմում։ Մի մարդ կարող է իր որդու հարազատ հայրը լինել, բայց այդ չի նշանակում, թե նրա հոգու հայրն էլ է։



digitised by A.R.A.R.@

Հոգեկան տարբեր խառնվածքների բաշխումը մեր ցեղում, սկզբից ևեթ, եղել է բնահաճ։

Մենք ձիավարեցինք, և իմ հորեղբորորդի Մուրադը երգեց։ Կարծես թե մենք մեզ զգում էինք մեր հին հայրենիքում, որտեղից մեր հարևանների կարծիքով, մեր բնատանիքն էր ծնունդ առել։

Ի վերջո հորեղբորորդի Մուրադն ասաց.

— Իջիր, ուզում եմ մենակ ես հեծնել։

— Կթողնե՞ս, որ ես էլ մենակ հեծնեմ։

— Ինչ որ ձին կուզի, — ասաց հորեղբորորդիս, — իջիր։

— Ձին կթողնի, — ասացի ես։

— Կտեսնենք, — պատասխանեց նա, — մի՛ մոռացիր, որ ես ձիերի հետ վարվելու իմ ձևն ունեմ։

— Ձիերի հետ քո իմացած վարվելու ձևը ես էլ գիտեմ։

— Քո ապահովության համար, հուսանք, որ այդպես է։ Իջիր, — ասաց նա։

— Շատ լավ, բայց մի մոռացիր, որ թողնելու ես մենակ հեծնել։

Ես ցած իջա, և իմ հորեղբորորդի Մուրադը կրունկներով խթանեց ձին ու բղավեց.

— Վազիր, թռի՛ր։

Ձին կանգնեց ետևի ոտքերի վրա, խրխնջաց և առաջ սլացավ կատաղի արագությամբ. իմ բոլոր տեսածների մեջ ամենագեղեցիկ տեսարանն էր այդ։

Հորեղբորորդիս ձին սրընթաց քշեց չոր խոտով ծածկված մի դաշտի միջով դեպի ոռոգման առուն։ Ձի նստած անցավ առուն և հինգ րոպե հետո վերադարձավ՝ քրտինքի մեջ կորած։

Արևը դուրս էր գալիս։

— Այժմ հեծնելու հերթն իմն է, — ասացի ես։

Իմ հորեղբորորդի Մուրադը ձիուց ցած իջավ։

— Հեծիր, — ասաց նա։

Ես թռա ձիու գավակը և մի պահ անասելի սարսափ զգացի։ Ձին չէր շարժվում։



— Կողերին քացի տուր, — ասաց հորեղբորորդիս, — ինչ ես սպասում։ Մենք այն պետք է ետ տանենք, քանի դեռ մարդիկ չեն արթնացել ու չեն տեսել մեզ։

Ես քացով խփեցի ձիու կողերին։ Մի անգամ էլ նա ցցվեց ետևի ոտքերի վրա, զիլ և աղմկալի խրխնջաց և սկսեց սուրալ։ Ես չգիտեի ինչ անեմ։ Փոխանակ դաշտի միջով դեպի ոռոգման առուն վազելու, ձին արշավեց ճանապարհով ցած, դեպի Տիգրան Հալաբյանի այգին և սկսեց որթատունկերի վրայով թռչել։ Նա արդեն թռել էր յոթ որթատունկերի վրայով, երբ ես ցած ընկա։ Ձին շարունակեց վազել։

Հորեղբորորդիս՝ Մուրադը, վազելով եկավ։

— Ես քո մասին չեմ մտահոգվում, — բղավեց նա, — մենք պետք է ձին բռնենք։ Դու այս կողմով գնա, ես՝ այն կողմով։ Եթե հանդիպես՝ մեղմ եղիր։ Ես մոտակայքում կլինեմ։

Ես շարունակեցի ճանապարհով ցած իջնել, իսկ հորեղբորորդիս՝ Մուրադը, գնաց դաշտի միջով՝ դեպի ոռոգման առուն։

Կես ժամում նա գտավ ձին և բերեց։

— Դե, — ասաց նա, — նստիր։ Ամբողջ աշխարհը այժմ արդեն արթուն է։

— Ի՞նչ պիտի անենք, — ասացի ես։

— Կամ պիտի վերադարձնենք, կամ պահենք մինչև վաղը առավոտ, — պատասխանեց նա։

Մուրադը մտահոգված չէր երևում, և ես հասկացա, որ նա ձին պահելու էր և ոչ թե վերադարձնելու։ Բոլոր դեպքերում, ոչ հիմա։

— Որտե՞ղ պիտի պահենք այն, — ասացի ես։

— Ես մի տեղ գիտեմ, — ասաց նա։

— Ինչքա՞ն ժամանակ է, որ դու այդ ձին գողացել ես, — հարցրի ես։

Հանկարծ մտքովս անցավ, որ նա, հավանաբար, բավական ժամանակ է, ինչ վայելում է առավոտյան այդ արշավները և միայն այսօր է եկել իմ ետևից, որովհետև գիտեր, թե ես ինչքան եմ սիրում ձի նստել։

— Ձի գողանալու մասին այդ ո՞վ է խոսում, — ասաց նա։

— Ինչևէ, ինչքա՞ն ժամանակ է, որ դու սկսել ես ամեն առավոտ ձի հեծնել։

— Այս առավոտվանից, — ասաց նա։

— Ճի՞շտ ես ասում։

— Անշուշտ ոչ, — ասաց նա, — բայց եթե մենք բռնվենք, դու այդպես կասես։ Ես չեմ ուզում, որ մենք երկուսով ստախոսներ լինենք։ Դու կասես, որ մենք այս առավոտ սկսեցինք ձի հեծնել։

— Շատ լավ, — համաձայնվեցի ես։

Զգուշությամբ նա ձին տարավ մի լքված այգու գոմը, որը մի ժամանակ Ֆեթվաջյան ազգանունով մի ագարակատիրոջ պարծանքն էր եղել։ Գոմում մի քիչ վարսակ և չոր առվույտ կար։

digitised by A.R.A.R.@



Մենք սկսեցինք տուն դառնալ։

— Հեշտ չէր ձիուն այդքան բարի լինել սովորեցնելը, — պարծեցավ նա, — սկզբում ուզում էր գժություններ անել, բայց, ինչպես ասացի, ես ձիու հետ վարվելու իմ հատուկ եղանակն ունեմ։ Ես կարող եմ նրան անել տալ այն, ինչ ես ցանկանում եմ։ Ձիերը ինձ հասկանում են։

— Ինչպե՞ս ես անում այդ, — ասացի ես։

— Ես ու ձին իրար լեզու հասկանում ենք, — ասաց նա։

— Հա, բայց ինչպիսի՞ լեզու է դա, — ասացի ես։

— Պարզ և ազնիվ, — ասաց նա։

— Երանի ես էլ իմանայի, թե ինչպես կարելի է ձիու հետ այդպիսի լեզու գտնել, — ասացի ես։

— Դու դեռ երեխա ես, — ասաց նա, — երբ տասներեք տարեկան դառնաս, կիմանաս անկլի-քըդ, — եղավ հորեղբորորդուս պատասխանը։

Ես տուն գնացի և անխորժակով նախաճաշեցի։

Նույն օրը կեսօրից հետո սուրճ խմելու և սիգարեթ ծխելու համար մեր տուն եկավ Խոսրով հորեղբայրս։ Նա բազմեց հյուրասենյակում, սուրճ խմեց, ծխեց և վերհիշեց հին երկիրը՝ Հայրենիքը։ Հետո մի ուրիշ այցելու եկավ, Ջոն Բայրո անունով մի ասորի ագարակատեր, որ մենությունից հայերեն խոսել էր սովորել։ Մենավոր այցելուին մայրս սուրճ և ծխախոտ հյուրասիրեց։ Նա փաթաթեց սիգարեթ, ըմպեց սուրճը, ծխեց և հետո, վերջապես, մի տխուր հառաչ հանելով՝ ասաց.

— Սպիտակ ձիս, որը անցյալ ամիս գողացվել է, դեռ չի գտնվել։ Չեմ հասկանում։

Խոսրով հորեղբայրս խիստ գրգռվեց և բղավեց.

— Վնաս չունի, ի՞նչ է մի ձիու կորուստը. չէ՞ որ ամբողջ հայրենի երկիրն ենք կորցրել, մի ձիու համար ինչ բան է այդ լացը։

— Քեզ համար ասելը հեշտ է, քաղաքի բնակիչ, — ասաց Ջոն Բայրոն, — բայց ի՞նչ կասես իմ սայլի մասին։ Ինչի՞ է պետք սայլը առանց ձիու։

— Կարևորությո՛ւն մի՛ տուր, — գոռաց Խոսրով հորեղբայրս։

— Այստեղ հասնելու համար տասը մղոն քայլեցի, — ասաց Ջոն Բայրոն։

— Ոտքե՞ր ունես, — բղավեց Խոսրով հորեղբայրս։

— Ձախ ոտքս ցավում է, — ասաց ագարակատերը։

— Ուշադրությո՛ւն մի՛ դարձրու, — ասաց Խոսրով հորեղբայրս։

— Այդ ձին իմ վրա վաթսուն դոլար է նստել, — ասաց ագարակատերը։

— Ես թքել եմ փողի վրա, — ասաց Խոսրով հորեղբայրս։

Նա վեր կացավ և հպարտ դուրս եկավ մեր տնից՝ դուռը ամուր փակելով։

Մայրս բացատրեց.

— Թեև այնքան հսկա է, բայց նա քնքուշ սիրտ ունի, նա պարզապես հայրենիքին է կարոտել։

Ագարակատերը հեռացավ, իսկ ես շտապեցի հորեղբորորդուս՝ Մուրադի տունը։

Նա նստել էր դեղձենու տակ և աշխատում էր դարմանել թռչելու անզոր մի կարմրալանջի վիրավոր թևը։ Նա խոսում էր թռչունի հետ։

— Ի՞նչ կա, — հարցրեց նա։

— Ագարակատերը՝ Ջոն Բայրոն, — ասացի ես, — այսօր այցելեց մեր տունը։ Նա ձին է ուզում։ Մի ամիս է, որ դու վերցրել ես։ Խոստացիր, որ չես վերադարձնի, մինչև ես ձի նստել սովորեմ։

## ՈՒԼԻԿԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ

Դուք գիտե՞ք ինչ է այս փոքրիկ, ուրախ ուլիկի անունը։

Չգիտե՞ք, դե իմացեք, այս ուլիկի անունը Բեքե է։



digitised by A.R.A.R.@

— Մի տարի է պետք, որ դու սովորես, — ասաց հորեղբորորդիս։

— Մենք կարող ենք ձին մի տարի պահել, — ասացի ես։

Հորեղբորորդիս՝ Մուրադը տեղից վեր թռավ։

— Ի՞նչ, — գոռաց նա, — Գարօղլանյան ընտանիքի մի անդամին գողությա՞ն ես մղում։ Ձին պետք է վերադարձվի իր իսկական տիրոջը։

— Ե՞րբ, — ասացի ես։

— Ամենաուշը վեց ամիս հետո, — ասաց նա։

Նա թռչունը օդ նետեց։ Թռչունը մեծ ճիգ գործ դրեց, երկու անգամ համարյա ընկավ, բայց ի վերջո թռավ բարձր և ուղիղ։

Երկու շաբաթ, ամեն օր առավոտ շուտ, իմ հորեղբորորդի Մուրադը ու ես ձին դուրս էինք բերում ավերված այգու գոմից, որտեղ թաքցնում էինք այն, ու քշում։ Եվ ամեն առավոտ, երբ ձիավարելու իմ հերթն էր հասնում, ձին թռչում էր որթատունկերի և փոքր ծառերի վրայով և ինձ գետին գցելով՝ վազում էր հեռու։ Այսուհանդերձ, ես հույս ունեի, որ ժամանակի ընթացքում կսովորեմ Մուրադ հորեղբորորդուս պես հեծնել։

Մի առավոտ, Ֆեթվաջյանի ավերված այգու ճանապարհին, մենք դեմ-դիմաց եկանք ագարակատեր Ջոն Բայրոյին, որը քաղաք էր գնում։

— Թող ես խոսեմ, — ասաց հորեղբորորդիս՝ Մուրադը, — ես ագարակատերերի հետ խոսելու ձևը գիտեմ։

— Բարի լույս, Ջոն Բայրո, — ագարակատիրոջն ասաց հորեղբորորդի Մուրադը։

Ագարակատերն ուշադրությամբ ուսումնասիրեց ձին։

— Բարի լույս, իմ բարեկամների որդիներ, — ասաց նա, — ի՞նչ է ձեր ձիու անունը։

— Իմ սիրտը, — հայերեն ասաց իմ հորեղբորորդի Մուրադը։

— Սիրուն անուն է՝ սիրուն ձիու համար, — ասաց Ջոն Բայրոն, — կարող եմ երդվել, որ դա շաբաթներ առաջ ինձանից գողացված ձին է։ Կարո՞ղ եմ բերանը նայել։

— Անշուշտ, — ասաց Մուրադը։

Ագարակատերը նայեց ձիու բերանը։

— Ատամ առ ատամ նման է, — ասաց նա, — ես կերդվեի, որ իմ ձին է, եթե ձեր ծնողներին չճանաչեի։ Ձեր ընտանիքի ազնվության համբավը լավ հայտնի է ինձ։ Երևի այս ձին իմ ձիու երկվորյակն է։ Կասկածոտ մի մարդ ավելի շուտ իր աչքերին պիտի հավատար, քան իր սրտին։ Բարի ճանապարհ, իմ դեռատի բարեկամներ։

— Հաջողություն, Ջոն Բայրո, — ասաց իմ հորեղբորորդի՝ Մուրադը։

Հաջորդ օրը առավոտ շուտ մենք ձին տարանք Ջոն Բայրոյի այգին և թողեցինք գոմում։ Շները մեզ շրջապատած հետևեցին, առանց ձայն հանելու։

— Շները, — փսփսացի Մուրադի ականջին, — կարծում էի, որ կհաչեն։

— Ուրիշի վրա կհաչեն, — ասաց նա։ — Ես գիտեմ շների հետ վարվելու ձևը։

Հորեղբորորդիս գրկեց ձին, քիթը սեղմեց ձիու քթին, ափով մեղմ շոյեց, և մենք հեռացանք։

Կեսօրից հետո Ջոն Բայրոն սայլով մեր տուն եկավ և մորս ցույց տվեց գողացված ու վերադարձված ձին։

— Չգիտեմ ինչ մտածել, — ասաց նա, — ձին ավելի ուժեղ է, քան առաջ։ Նույնիսկ ավելի մեղմ բնավորությամբ։ Փառք աստծո։

Իմ Խոսրով հորեղբայրը, որ հյուրասենյակումն էր, զայրացավ և բղավեց.

— Հանգիստ, մարդ, հանգիստ։ Քո ձին վերադարձվել է, ուշադրություն մի՛ դարձրու։

Անգլ. թարգմ. Գ. Ր. ՔԵՇԻՇՅԱՆ





Բեբեն բակում տխրում էր։ Նա ուզում է փախչել-գնալ հեռո՜ւ, հեռո՜ւ, կանաչ մարգագետինը։

Աքլորը վախից երգեց. «Ծուղ-րու-ղո՜ւ», հավերը կչկչացին։ Բայց ոչ ոք չկարողացավ ետ պահել նրան։

digitised by A.R.A.R.@

# ՎԱՐԱԶԻ ՈՐՍ

ՖԱՀՐԱԴ ՍԱՐԳՍՅԱՆ

Երևանի № 54 դպրոցի աշակերտ

Աշուն էր։

Հրաշալի էր անտառում աշնանը։ Ծառերի կանաչը տեղի էր տալիս ոսկեզօծ տերևներին, որոնք թափվելով ծառերից՝ լցվում էին Խոսրովի անդնդախոր ձորերը և քամուց հետապնդված՝ թափվում Ողջի գետը։

Ամբողջ անտառը ծածկված էր դեղնակարմիր



տերևներով, որոնք հիանալի ներդաշնակվում էին անտառային գույնզգույն ծաղիկների և կապույտ երկնքի հետ։ Ծառերի արանքից հանկարծ երևում էին վախեցած շլիկի երկար ականջները և գորշ կծիկը ցատկելով թփերի վրայով, անհետանում էր թփուտներում։

Հիանալի օրեր էին որսկանի համար։

Չնայած տարիներ առաջ որսի ժամանակ որսկան Առաքելի հետ պատահել էր մի դեպք, որը կարող էր զրկել նրան կյանքից, նա ձեռք չէր քաշում իր երկփողանի հրացանից ու արկածալի որսորդությունից։

Երեկոները Առաքելի մոտ էին հավաքվում նրա ընկերները և տիպում, որ նա պատմի որևէ դեպք իր որսորդական կյանքից։ Առաքելը սիրով կատարում էր այդ խնդրանքը։

Հատկապես հուզիչ էր նրա այն պատմությունը, երբ որսի ժամանակ վիրավոր վարազը արհամարհելով ներկա եղող մարդկանց, հարձակվել էր Առաքելի վրա, երեսին թողնելով մի երկար վերք, կտրված ականջով փախել էր։ Տարվելով Առաքելի վիրավոր երեսով, որսորդները չէին կարողացել հետապնդել գազանին, որը կարծես գրավ էր թողել իր կտրված ականջի ծայրը։

Երկու ամիս էր, ինչ ես հյուր էի որսկան Առաքելին։ Նա ամեն անգամ խոստանում էր ինձ հետը որսի տանել, բայց միշտ մի բան խանգարում էր։

Եվ ահա մի օր, երբ արևը ոսկյա վարսերը փռեց լեռների վրա, մենք դուրս եկանք գյուղից և մտանք Խոսրովի գեղատեսիլ անտառը։ Ցողաթաթախ անտառը մեզ սիրով ընդունեց իր գիրկը։

Առջևից քայլում էր որսորդ Առաքելը, հաղթանդամ ու դիմացկուն, արդեն ճերմակած գլխով, որի վրա քունքից մինչև ծնոտը ձգված էր մի խոր սպի։ Նրանից հետո զինվորական քայլվածքով գնում էր բանակից նոր վերադարձած Ալեքսիսը։ Նրա մեջքը պիրկ գրկում էր որսորդական լայն գոտին՝ կեռիկներով ու փամփշտակալներով։ Գոտու մեջ խրել էր որսորդական դաշույնը, փակված կաշվե պատյանով։ Իսկ հետևից գնում էի ես՝ այնպիսի քայլերով, որ կարծես վախենում էի տրորել գետնին փռված նախշուն գորգերը։

Արդեն կեսօր էր, երբ հասանք որսատեղին։ Կուրք բացատում մի քիչ հանգստացանք և չոր կածանով շարժվեցինք առաջ։ Անտառում լսվում էր ճռնճռուկների ճռվողյունը և ծառի փչակին հարվածող փայտփորիկի միալար տկտկոցը։ Մինչ մենք զմայլված հեքիաթային անտառի գեղեցկությամբ՝ առաջ էինք շարժվում, որսորդ Առաքելը չոքեց և փափուկ հողի վրա շոշափելով ինչ-որ կճղակների հետքեր, մեզ իր մոտ կանչեց.

— Ահա՛, սա չի կարող դուրս պրծնել մեր ձեռքից։ Վարազի հետք է, բավականին էլ խոշոր է

Ուլիկը սրճիկ տալով գնաց-հեռացավ, հասավ մարգագետին։ Նայում է այս կողմ՝ թիթեռնիկներ են, այն կողմ՝ ծաղիկներ։

Ահա առվակը, որի վրա տախտակներ են դրված։ Բեբեն վազում է կամրջի վրայով։ Բայց այս ի՞նչ բան է...



digitised by A.R.A.R.@

*երևում, հետքերը հողի մեջ խորն են,—չիբուխը փսչացնելով ասաց նա։*

*Մենք անձայն հետևեցինք Առաքելին։ Հետքերը տանում էին դեպի Տանձաձոր։*

*—Անիծվածն անպայման տանձ ուտելու է գնացել,—եզրակացրեց Ավետիքը։*

*Հանկարծ Առաքելը մեզ նշան արեց, լռեց ու թաքնվեց թփերի մեջ։ Ետ քաշելով մեր առջևը փակող թփերը, ականատես եղանք զարմանալի մի տեսարանի։*

*Կռացած տանձենու տակ կանգնել էր մի մեծ վարազ։ Նրա ժանիքը, կեռ դանակի պես դուրս գալով բերանից, ծածկել էր վերին շրթունքի մի մասը՝ վարազին տալով ահասարսուռ կերպարանք։ Բարակ պոչը կեռել էր մեջքի վրա, որտեղ փշերի պես ցցվել էին նրա մազերը, իսկ աջ ոտքը սեղպ-սեղպ քսվում էր ծառի բնին, երևում էր, որ վիրավորված էր եղել, և վերքը բոր էր գալիս։ Վարազը հաճույքից չպչպացնելով խժռում էր թափված տանձն ու զկեռը։ Միայն մի րոպե նա բարձրացրեց սևացած գլուխը ու ճարպի մեջ կորած պղտոր աչքերով նայելով մեզ, շարունակեց իր զբաղմունքը։ Ամբողջովին ուշադրություն դարձած՝ ես հետևում էի վարազի յուրաքանչյուր շարժումին։ «Ահա կենդանի թիրախ», մտածեցի ես։ Այս միջոցին էր, երբ լսվեց անեղ մի կրակոց, ապա՝ երկրորդը, և ձայնը եկէջ-ներով տարածվելով անտառում, փշրվեց լեռան լանջին ու թափվեց ձորը։ Մոտիկում եղած թռչունները սարսափահար օդ բարձրացան։*

*Վարազը նախ մռնչաց սուր ձայնով, ապա, կարծես զսպանակների վրա լիներ, ցատկեց օդ և ընկավ գետին, այլևս վեր չբարձրանալու համար։ Ջգուշությամբ դուրս գալով թփերից՝ մենք մոտեցանք խփված վարազին։ Ես նկատեցի, որ վարազի մի ականջը ծայրից կտրված էր, և ակամա նայեցի Առաքելի երեսի ալիքին՝ անհասկանալի մի կապ գտնելով դրանց մեջ։*

*Առաքելը շոշափեց տարիներ առաջ իր իսկ ձեռքով վիրավորված գազանի ազդրը, կտրված ականջը և մռայլվեց...*

*Ավետիքը կտրում էր մսի մի ահագին կտոր՝ խորովելու համար։ Ես կրակի համար չոր խռիվ էի հավաքում և մտածում էի այդ օրվա որսի մասին։*



## ՄԱՅԻՍԻ ՄԵԿԻՆ

Արփին շողում է,
Ժպտում է պայծառ,
Ու փողփողում են
Դրոշները վառ։

Հույզով են լցված
Սրտերը բոլոր,
Ցնծում է ծաղկած
Բնությունն այսօր։

Ծաղիկ ու ծիծաղ,
Երգեր խնդագին,
Հնչում են ուրախ
Մայիսի մեկին։

## ԳԻՇԵՐ

Մութը իջավ, թանձրացավ
Կատարներին լեռների,
Լուսինն հուշիկ բարձրացավ
Քողի տակից ամպերի։

Դաշտ ու անտառ քուն մտան,
Լուռ են հավքերն, անմրմունջ,
Մեղմ ժպտում է լուսընկան
Ու չի լսվում ոչ մի շունչ։

**ՍՊԱՐՏԱԿ ԳԱՍՊԱՐՅԱՆ**
(Ախուրյանի շրջանի Ոսկեհասկ գյուղի
միջնակարգ դպրոցի աշակերտ)

## ԶԱՐԹՈՆՔ

Արևը նայեց սարի ետևից
Ու փռեց ոսկի վարսերն իր հրե,
Ժրաջան առուն կարկաչեց նորից
Ու դալարեցին խոտ ու ծաղիկներ։

Դաշտում ու սարում փչեց մեղմ քամին,
Տարածվեց անուշ բույրը ծաղկունքի,
Զմրուխտ կանաչով ծածկվեց այգին,
Ու հնչեց մեղմիկ սրինգը հովվի։

**ԾԱՂԿԻՆԱՐ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
(Երևանի Ղ. Ղուկասյանի անվան պիոներների
պալատի գրական խմբակի անդամ)



*Նեղլիկ տախտակի վրայով դիմացից երկրորդ ուլիկն է գալիս։*

*Ուլիկները բարկացան, չեն ուզում մեկը մյուսին զիջել։*

*Գլուխներով կպան ու երկուսն էլ, թը՜մփ, ջուրն ընկան։*

digitised by A.R.A.R.@




Այդ օրը Սիլվան ուրախությունից թիթեռնիկի նման անվերջ թռչկոտում էր: Նրա հայրիկը նոր էր վերադարձել Կիևից:

Երեկո էր, սեղանի մոտ դեմ-դիմաց նստած էին հայր ու աղջիկ: Հայրիկը պատմում էր հոչակավոր Կրեշչատիկի, պուրակների ու փողոցների, թանգարանների ու թատրոնների մասին:

— Հայրի՛կ, Կիևում ամենից շատ ի՞նչը դուր եկավ քեզ:

— Աղջիկս, ինձ հրապուրել էին այն բազմաթիվ սպիտակ աղավնիները, որոնցով լիքն էին Կիևի հրապարակներն ու փողոցները,—մի պահ լռությունից հետո ասաց հայրը:

— Հայրի՛կ, իսկ ինչո՞ւ մեզ մոտ Երևանում էլ աղավնիներ չկան.—ես աղավնիներ շատ եմ սիրում,—տրտնջաց աղջիկը:

— Ես քեզ համար աղավնիներ կգնեմ,—խոստացավ հայրը և տեղից վեր կացավ:

Քիչ հետո Սիլվան թուղթ ու գրիչ վերցրեց ու սկսեց գրել. «Սիրելի խմբագրություն, հայրիկս ինձ պատմել է, որ Կիևն ավելի է գեղեցկանում, երբ հոյակերտ շենքերի վրայով ճախրում են սպիտակաթև աղավնիները: Ինչո՞ւ մեր Երևանում էլ աղավնիներ չկան: Ես մտովին պատկերացնում եմ այդ թռչուններին, որոնք շատ կսազեն Վ. Ի. Լենինի անվան հրապարակին:

Սիրելի ընկերներ, հայ պիոներներ, հետևեցեք իմ օրինակին, ես որոշել եմ Լենինի անվան հրապարակին աղավնիներ նվիրել: Եկեք, աղավնիներ բազմացնելու գործը մեր ձեռքը վերցնենք: Թող մեր հրապարակում էլ անվերջ ճախրեն սպիտակաթև թռչունները»:

Սիլվան նամակը վերջացրեց, ապա խնամքով ծալեց, դրեց ծրարի մեջ ու հասցեագրեց. «Երևան, «Պիոներ կանչ» թերթի խմբագրություն»:

Մի քանի օրից հետո փոստատարը Սիլվային հանձնեց «Պիոներ կանչ»-ի նոր համարը: Աղջիկը առաջին էջում տեսավ Վ. Ի. Լենինի բարձր արձանը. Նրա շուրջը աղավնիներ էին թևածում: Սիլվան կարդաց իր սեփական նախադասությունները, կարդաց ու թերթը ջերմագին սեղմեց կրծքին: Նրան արձագանքում էին Գորիսի, Ուզունլարի, Երևանի դպրոցների պիոներները:

Պատանի լենինյաններին ոգեշունչ խոսքեր էին հղում մեծանուն նկարիչ Մարտիրոս Սարյանը, ՍՍՌՄ ժողովրդական արտիստուհի Տաթևիկ Սազանդարյանը, գրողներ Գեղամ Սարյանը, Վախտանգ Անանյանը: Բոլորը ցանկություն են հայտնում Լենինի անվան հրապարակում աղավնիներ տեսնել:

Եվ ահա Սիլվան ընկերուհիների հետ զբոսնում է հրապարակում:

Թա՛խկ-թի՛կ, թա՛խկ-թի՛կ,—լսվում են Կուլտուրայի տան, Ժողտնտխորհի, Նոր հյուրանոցի, Կառավարական տան շենքերի տանիքներից: Անցորդները մի պահ կանգ են առնում, նայում դեպի վեր և գոհ միմյանց ասում.

— Աղավնիների համար բներ են պատրաստում: Պիոներները որոշել են հրապարակում աղավնիներ պահել:

— Մայրիկ, ես ամեն օր աղավնիների համար հացի փշրանքներ կբերեմ, չէ՞,—ասում է մի փոքրիկ գանգրահեր աղջիկ:

Պիոներների խնամած աղավնիների երամներին են միացել նաև կենդանաբանական այգու, Որսորդական ընկերության, Գյուղատնտեսության մինիստրության Անտառային վարչության կողմից հրապարակին հատկացված աղավնիները:

Մի քանի ամիս առաջ Սիլվան միայն մտքով էր պատկերացնում աղավնիներով լի հրապարակը: Իսկ այսօր նա հպարտորեն նայում է դեպի կապույտ հեռուները ճախրող սպիտակ թռչուններին և հայացքով որոնում իր աղավնիները:

Ծ. ՇԱՂԳԱՍՅԱՆ

*Բարեբախտաբար առվակը խոր չէր: Բեբեն ափ վազեց, թափ տվեց իրեն:*

*Մեր ուլիկը հեռու վազեց՝ դեպի դաշտը: Այս ի՞նչ բան է: Ա՜խ, մի ինչ-որ խրտվիլա՜կ է, շլյապան գլխին՝ թևերն է թափահարում:*



digitised by A.R.A.R.@

# ԵՐԵՍՈՒՆՉՈՐՍ ՏԱՐԻ ԱՌԱՋ

ԱՐԱՄ ՆԱԶԱՐՅԱՆ

(Հիշողություններ)

1924 թվականի սեպտեմբերի սկզբներին էր։

Արևը նոր էր բարձրացել Արագած լեռան կատարից։ Գյուղական երդիկներից վեր էին ձգվում թոնիրների բարակ ծխասյուները։

Հանկարծ դպրոցի կողմից լսվեց շեփորի ձայնը, որը տարածվեց գյուղի վրա և արձագանքելով լռեց մոտակա սարերի կանաչ լանջերում ու ձորերում։

Անսովոր էր շեփորի ձայնը գյուղի երեխաների համար։ Նրանք անմիջապես դուրս թափվեցին տներից ու վազեցին դպրոցի կողմը։ Նրանցից շատերը, իհարկե, վաղուց արդեն գիտեին, թե ինչ արտակարգ բան է լինելու այդ օրը, և վաղ առավոտից անհամբեր սպասում էին շեփորի ձայնին։

Մի քանի րոպեում գյուղի բոլոր աշակերտները հավաքվեցին դպրոցի առաջ։ Գալիս էին նաև նրանց ծնողները, ավագ և կրտսեր եղբայրներն ու քույրերը։ Քիչ անց այնքան մեծ բազմություն հավաքվեց, որ շատերը կանգնելու տեղ չգտնելով, բարձրացան մոտիկ տների կտուրները։

Երբ ցածր դասարանների աշակերտները ուսուցիչների օգնությամբ շարք կանգնեցին, մի անգամ էլ կանչեց շեփորը և լռեց։ Եկավ այն պահը, որին սրտատրոփ սպասում էին ոչ միայն աշակերտները, այլև մեծերը։ Քար լռության մեջ շարք կանգնածները սկսեցին միասին բառ առ բառ արտասանել պատանի պիոների հանդիսավոր խոստումը։ Վերջացնելուն պես բարձր դասարանների աշակերտներն ու ուսուցիչները մոտեցան նոր ընդունված պիոներներին և նրանց վզերին կարմիր վզկապներ կապեցին։

Դժվար է հաղորդել այն ներքին հուզմունքն ու հրճվանքը, որ այդ րոպեներին կարելի էր կարդալ յուրաքանչյուր պիոների հայացքում։ Զարմանալի փայլ էին ստացել նրանց վառվռուն աչքերը, իսկ երեսները վզկապների շողքից ավելի կասկարմիր էին դարձել։

Պիոներներին բաժանեցինք ջոկատների ու օղակների, ընտրեցինք պիոներական խորհուրդ և գեղեցիկ շարքերով դուրս եկանք գյուղամեջ։ Շատերի ձեռքերին փոքրիկ դրոշակներ կային։ Առջևից քայլում էին շեփորահարն ու թմբկահարը։ Նրանց հետևից վազում էին ավելի փոքրիկները, իսկ մեծերը կտուրներին կանգնած՝ ուշադիր նայում էին գյուղի անդրանիկ պիոներներին։

Այսպես ստեղծվեց պիոներական առաջին կազմակերպությունը Թալինում։

* * *

Ես Թալին էի եկել օգոստոսի վերջին։ Մի օր ինձ կանչեցին Լենինականի գավառային կոմիտե և ասացին.

— Մեր գավառում պիոներական կազմակերպություն չի ստեղծված միայն Թալինի շրջանում։ Այդ նպատակով էլ քեզ ուզում ենք աշխատանքի ուղարկել Թալին՝ որպես պիոներական հրահանգիչ։

Ուրախությանս չափ ու սահման չկար։ Ես նոր էի հրաժեշտ տվել որբանոցին, և գավառային կոմիտեից այդպիսի հանձնարարություն ստանալը մեծագույն պատիվ էր ինձ համար։

Հետևյալ օրը ճանապարհ ընկա։ Ավտոմեքենա չկար, սայլով գնալ հնարավոր չէր։ Պետք է գնացքով գնայի Ղարաքիլիսա, իսկ այնտեղից մինչև Թալին ոտքով մի քանի ժամվա ճանապարհ էր։

Երեկոյան միայն հասա Թալին։ Առավոտյան գնացի շրջանի պարտիական հրահանգչի մոտ։ Նրա ցուցումներով ու օժանդակությամբ, դպրոցի ուսուցիչների հետ կազմեցինք մեր հետագա աշխատանքների պլանը։

Դասերն սկսվելու հենց առաջին օրը ցածր դասարանների աշակերտներին հավաքեցինք դասարաններից մեկում։ Ես աշակերտներին պատմեցի պիոներական կազմակերպության մասին, ասացի, թե ինչով են զբաղված պիոներները, ինչու են նրանք վզկապ կապում, ինչու է վզկապը կարմիր ներկված, և ինչու երեք ծայր ունի և այլն։



Բոբեն վազում է ամբողջ ուժով։ «Հա՛մ,-հա՛մ, հա՛մ», նրա հետևից ծիծաղում է Թռչնակը։ Ախր խրտվիլակը ճնճղուկների համար է, ոչ թե ուլիկների։
Այդ ժամանակ փոքրիկ Պետյան տուն էր դառնում։ Նա խղճաց մոլորված ուլիկին։

digitised by A.R.A.R.@

Ժողովի վերջում բոլոր երեխաները ցանկություն հայտնեցին պիոներ լինել և տեղն ու տեղը ցուցակագրվեցին։

Մոտենում էր հանդիսավոր օրը, բայց մենք չունեինք ոչ շեփոր, ոչ էլ թմբուկ։ Բացի այդ, երեխաներից ոչ մեկը վզկապ չուներ, որովհետև խանութում վզկապներ չկային։ Իմանալով այդ մասին, շրջկոմը հատուկ գումար բաց թողեց։ Մենք գնեցինք թմբուկ, շեփոր, կարմիր կտոր, որից կարեցինք պիոներական վզկապներ ու դրոշակներ։

* * *

Թալինում պիոներական կազմակերպություն ըստեղծելու լուրը անմիջապես տարածվեց ամբողջ շրջանում։ Մոտիկ գյուղերի աշակերտները շուտ-շուտ գալիս էին Թալինի դպրոցը՝ տեսնելու առաջին պիոներներին և ծանոթանալու նրանց գործերի հետ։ Վերադառնալիս նրանք խնդրում էին իրենց մոտ էլ պիոներական կազմակերպություն ստեղծել։ Շատ չանցած պիոներական կազմակերպություններ ստեղծվեցին նաև Մաստարա, Աշնակ, հետո շրջանի մյուս գյուղերում։ Բայց Թալինի դպրոցը դարձել էր շրջանի պիոներական աշխատանքի կենտրոնը. բոլորը հետևում էին թալինցիների օրինակին։

Իսկ ի՞նչ էին անում Թալինի պիոներները։ Ամենից առաջ նրանք լավ էին սովորում։ Եթե հանկարծ պիոներներից մեկն ու մեկը դպրոց ներկայանար դասերը չսովորած, ամբողջ ջոկատը իրար էր խառնվում։ Առաջին անգամ ընկերները ներում էին և բավարարվում միայն բանավոր դիտողություններ անելով։ Կրկնվելու դեպքում նկարում էին պատի թերթում և այլևս հանգիստ չէին տալիս, մինչև որ նա չհասներ առաջավորներին։

Մենք հատուկ ուշադրություն էինք դարձնում ֆիզկուլտուրային։ Մի քանի օրվա ընթացքում պիոներները դպրոցամերձ հողամասը մաքրեցին քարերից ու հողաթմբերից և դարձրին սպորտային հրապարակ։ Ամեն օր վաղ առավոտյան այդտեղ էին հավաքվում դպրոցի բոլոր աշակերտները և միասին մարմնամարզական վարժություններ կատարում։ Դպրոցում կազմակերպվեցին նաև սպորտային խմբակներ։ Չկար մի պիոներ, որ չզբաղվեր սպորտով. դա բոլոր երեխաների սիրելի զբաղմունքն էր։ Ամենօրյա վարժությունները չէին դադարում նաև ձմռան ցրտին։ Ամեն շաբաթ և կիրակի օրերը մեծ խմբերով դուրս էինք գալիս զբոսանքի ու «որսորդության»։ Այն ժամանակ գյուղում դահուկ չկար, և ամբողջ օրը ոտքով շրջում էինք ձյունածածկ դաշտերում, սարերում ու ձորերում։ Երբեմն էլ մեզ հաջողվում էր նապաստակներ որսալ և հաղթանակով վերադառնալ գյուղ։

Գարնան և ամռան ամիսներին մեր պիոներների սիրելի վայրերից մեկն էլ Թալինից 3—4 կմ տարածության վրա գտնվող Բուղուղլի կոչված լեռն էր, որտեղ մենք հաճախ էինք լինում։ Այդ լեռը հարուստ էր իր բազմազան ծաղիկներով, թիթեռնիկներով։ Ուսուցիչների ղեկավարությամբ բնության գրկում շատ հաճախ կազմակերպում էինք զրույցներ այս կամ այն առարկաների վերաբերյալ, իհարկե ամենից շատ բնագիտության առարկայի գծով, որը մեծ չափով նպաստում էր առարկաները լավ տիրապետելուն։

Պիոներներն ունեին նաև իրենց երգի-պարի խմբակը, որը հաճախ մեկնում էր մոտակա գյուղերը և ելույթ ունենում աշակերտության և գյուղացիների համար։ Այդ ելույթները սովորաբար լինում էին դպրոցների միջանցքներում, որտեղ ժամանակավորապես բեմ էինք սարքում ինքներս։ Շուտով այսպիսի խմբակներ կազմակերպվեցին նաև մյուս գյուղերում։ Պիոներական կազմակերպությունների ստեղծումը մեծ հետաքրքրություն ու աշխուժություն էր առաջ բերել ոչ միայն աշակերտության, այլև փոքրահասակների ու մեծերի շրջանում։ Պիոներական հավաքույթների ժամանակ միշտ էլ մեծ բազմություն էր հավաքվում լուսամուտների մոտ։ Հավաքույթներում պիոներները զրույցներ ու պատմություններ էին լսում բոլշևիկների պարտիայի, ռևոլյուցիայի, Վ. Ի. Լենինի, կոմերիտմիության, պիոներական կազմակերպության մասին, կարդում էին փոքրիկ գրքեր, սովորում պիոներական երգեր ու խաղեր։

Հավաքույթներից հետո շարքերով մի քանի անգամ անցնում էինք գյուղի միջով ու նորից վերադառնում դպրոց։

Հիմա էլ, երբ փողոցում տեսնում եմ շարքերով անցնող պիոներներին, աչքիս առջև վառ կերպով պատկերանում են այդ օրերը։ Դրանք երբեք չեն աղոտանում հիշողությանս մեջ։



— Ինձ հետ արի։ Մենք կփնտրենք քո տիրոջը։ Գնանք։

Պետյայի մայրիկը ուլիկին ներս տարավ, խոտ ու ջուր տվեց։

Բայց Բեբեն տխուր էր։ Նա ուզում էր տուն գնալ, իրենց բակը։



digitised by A.R.A.R.@

ՍՈՒՐԵՆ ԴԱՅԱՆ

# ԿԵՆԴԱՆԱԲԱՆԱ



Առյուծ արքան՝ բաշով դեղին,
Իշխում է ողջ գազան ցեղին,
Բայց արքայի համար դաժան
Ոչ թագ է պետք, ոչ՝ գավազան։
Մի ուղտ նայեց նրա բաշին,
Փշաքաղվեց մեջքի կաշին։



Ճանճը վագրին տնազ արեց,
Քթի տակին թռավ պարեց,
Բայց հենց նստեց նրա թաթին,
Բերնի շնչից դիպավ պատին։

Տես մայրիկին կոկորդիլոս,
Կոկորդ ունի ինչպես մի փոս,
Շատ ուտում է ու քիչ դատում,
Բալիկներին է խրատում։
Մայրիկն ունի երկու բալիկ,
Երկու բալիկ՝ սևուկ-չալիկ,
Ու երկուսն էլ հագնում են միշտ
Երկու կարմիր փայտե նալիկ։
Դնում են ալ-կարմիր քոլոզ,
Կարմիր քոլոզ, ծայրը՝ պոլոզ.
Ու մայրիկի ձեռքից բռնած՝
Ման են գալիս տնկոզ-տնկոզ։





Մեջքին հենած թաթիկները
Ինչպես ճաղատ պապիկներ,
Ման են գալիս կապիկները
Հագած ներմակ շապիկներ։
Բայց անհանգիստ կապիկները
Լավ չեն պահում շապիկները։
Թավալվում են շորը հագին
Ու դնում են իրենց տակին։



*— Դու ինչո՞ւ ոչինչ չես ուտում, —հարցնում է հորթուկը։*
*— Ուզում եմ մեր տուն գնալ։ Մա՜ա,— լալիս է ուլիկը։*
*Հաստափոր գոճին ու հնդկահավը ծիծաղեցին խեղճ Բեբեի վրա։*

digitised by A.R.A.R.@

# ԿԱՆ ԱՅԳՈՒՄ



Լվացարար կենգուրուն
Իր ձագին է գուրգուրում,
Գուրգուրում է համբուրում,
Լողացնում է աղբյուրում,
Լողացնում է, հագցնում,
Փորի պարկում թաքցնում։
Մեր մայրիկին պարկավոր
Ազատ ձեռք է հարկավոր՝
Լվացք անի, ջուր բերի,
Ջալ բալիկին քուն բերի։



Սա ոչ բեմ է, ոչ՝ դահլիճ,
Այլ պարզապես մի մեծ լիճ։
— Որ այդպես է, այդ լճում
Ո՞վ է երգում ու ճչում։
Տարօրինակ այս բեմում
Արագիլն է միշտ ճեմում.
Կարմրատոտ,
Մեծատոտ,
Կտուցը ցից ու կավոտ.
Իսկ կտուցից ոչ թե որդ,
Նայում է մեզ մի մեծ գորտ։



Հենց որ փիղը իրեն ցնցեց,
— Երկրաշարժ է,—կանչեց մի էծ։
— Հարա՜յ, փախե՜ք,—կանչեց մեղուն,
Սարը շարժվեց իրեն տեղում։
Բայց փղերը մանուկ ու ծեր,
Ե՛վ խելոք են, և՛ ջանասեր։
Փայտ բերեցին երկու կնճիթ
Ու շինեցին երկու խրճիթ.
Մի մեծ խրճիթ մայրիկ փղին,
Մի պստիկն էլ նրա տղին։

Փիղն է գալիս, հողն է դողում,
Ոտքի տակին հետք է թողնում.
Եկավ թե չէ, քիթը ճոճեց,
Ծառն արմատից քաշեց պոկեց։



Պաղ աղբյուրից մաքուր, զուլալ,
Ջուր էր խմում մի թուխ մարալ.
Բայց երբ իրեն ջրում տեսավ,
Փախավ մինչև սարը հասավ։
Նրա գլխին բալի ծառ,
Ոչ բալ ունի, ոչ էլ բար,
Մեր մարալի գլխին ծառ,
Մի ծիտիկ էլ վրան թառ։

Նկ. Հ. ՏԵՐ-ՂԱԶԱՐՅԱՆԻ



*Պետյան Բեբեի հետ գնաց հարևան գյուղը։*
*— Ընկեր վարպետ,— դիմում է ատաղձագործին։ — Չգիտե՞ք, թե սա ում ուլիկն է։*
*— Չգիտեմ, տղաս։ Հարցրու ուրիշներին,— պատասխանեց ատաղձագործը։*



5059-58

digitised by A.R.A.R.@

Ն. ԶԱՐՅԱՆ



# ԱՍԱՐ

Նկ. Ս. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

Մեր բրիգադավար ուստա Խաչոն մի գամփռ ուներ Ասար անունով:

Շուն մի՛ ասիր, մի առյուծ. նոսի կողմից բարակ, պարանոցը հաստ, բուրդը մուգ-շիկավուն: Մեր թաղի պարծանքն էր Ասարը: Կռվի մեջ նրան հաղթել չէր կարող ոչ մի շուն: Ձմռան գիշերները գայլերը նրա ահից մեր թաղին մոտենալ չէին համարձակվում: Նա իր կյանքում հինգ գայլ էր խեղդել:

Բայց Ասարը շատ խելոք էր ու բարի: Մենք, թաղի երեխաներս, ինչ ասես, չէինք հանում նրա գլխին: Բռնում էինք պոչից, կախվում էինք վզից, էշ արած հեծնում էինք, ցորենի հասկով քիթը խուտուտ էինք ածում, եթե քնած էր լինում դեզի տակ: Հաֆ անում, զարթնում էր, բայց մեզ ճանաչելով՝ պոչն իսկույն շարժում և սկսում էր թռչկոտել: Մենք նրան շատ էինք սիրում: Իրարից հերթը խլում էինք մեր բերանի ամենահամեղ պատառն Ասարի հետ կիսելու համար:

Ամռան ամիսներին Ասարը լինում էր դաշտավարական բրիգադի հետ հանդում կամ կալատեղում: Իսկ ձմեռը կոլխոզի հովիվները նրան տանում էին արոտատեղ: Ասարը հոտի հինգ շներից ավելի սարսափելի էր գայլերի համար: Եթե նա հոտի կողքին էր, ուրեմն ոչխարը կարող էր համարձակ ցրիվ գալ թփերի մեջ, պճեղով ձյան տակից խոտը հանել ու հանգիստ արածել:

Մի երեկո ոչխարը սարից գոմերն իջեցնելիս՝ հովիվները նկատում են, որ Ուստունենց Խաչոյի կաղ մաքին և Ասարը չկան: Երկար փնտրելուց հետո ոչխարի ոտնահետքով գնում են դեպի սար: Շուտով լսում են Ասարի գայլահաչը և մթի մեջ նշմարում երկու պլպլան ճրագ: Շունը, կաղ ոչխարն առած ոտքերի մեջ, նրան պաշտպանում էր գայլից:

— Ասա՛ր, Ասա՛ր, հե՜յ,— ձայն է տալիս քեռի Հարեթը:

Հովիվների ձայնը լսելուն պես՝ Ասարը կաղ մաքին թողնում է նրանց հսկողությանը և հարձակվում գայլի վրա:

Առավոտյան քեռի Հարեթը գայլի մորթին բերեց կոլխոզի գրասենյակը և պատմեց Ասարի այդ նոր քաջության մասին:

Ասարի համբավը տարածված էր մեր շրջանի գյուղերում: Զանազան տեղերից մարդիկ էին գալիս Ուստունենց Խաչոյի գամփռը տեսնելու համար: Մեր հարևան Մասրածորի կոլխոզում կար մի քուրդ հովիվ, անունը՝ Զայդո: Սա շարունակ ասում էր.

— Ուստա՛ Խաչո, Ասարը՝ ինձ, տասը ոչխարս՝ քեզ:

Ես ու տղերքը շատ էինք վախենում, որ ուստա Խաչոն մեր Ասարին կծախի: Բայց նա քուրդ հովվին միշտ էլ նույն պատասխանն էր տալիս.

— Տասը չէ, հարյուր ոչխար էլ տաս, ես իմ ասլան Ասարից բաժանվողը չեմ:



Բայց ոչ ոք չգիտեր, թե ում ուլիկն է Բեբեն. ո՛չ զարբինը, ո՛չ մեղվաբուծը, որոնց դիմեց Պետյան:

Երկրորդ օրն էլ անցավ, երրորդ օրն էլ: Բեբեն ավելի շատ տխրեց և ոչինչ չէր ուզում ուտել: Պետյան մտածում էր:

digitised by A.R.A.R.@

Հեռավոր հանդերը կամ հարևան գյուղերը գնալիս՝ ուստան Ասարին հետն էր վերցնում ու վերադարձին զարմացած պատմում.

— Արևս վկա, էս անասունը մարդու խելք ունի։ Ամեն անգամ անցորդի հանդիպելիս աչքիս է նայում, ասես՝ հարցնում է ինձանից՝ հաչել պե՞տք է, թե՝ ոչ։

Աշնանացանի վերջին օրը Ասարը անհետացավ։

Փնտրեցինք ամեն տեղ՝ հովիվների մոտ, կալատեղում, գյուղի բակերում։ Տաս օր որոնեցինք։ Չկար ու չկար։ Թաղն իրար անցավ։ Կարծես կորել էր բոլորի սրտին հարազատ մի անձնավորություն։ Ի՞նչ եղավ մեր քաջ ու խելոք Ասարը։ Գայլերը նրան տանել չէին կարող, այն էլ աշնանացանի այս պարզ օրերին։ Եթե նախանձոտ մարդիկ նրան թունավորել էին, ապա դիակը մի տեղ կերևար։ Մնում էր ենթադրել, որ Մարաձորի Զայդոն է մի հնարքով գրավել նրան ու տարել։

Ուստա Խաչոն մեր նախագահի հետ միասին գնաց Մարաձոր։ Զայդոյին կանչել տվին գրասենյակ։



Զայդոն լաց եղավ ու երդվեց, որ մտքովն իսկ չի անցկացրել գողանալ հարևան կոլխոզի շունը։

— Գողությո՛ւնը հին կենցաղ է, ախպե՛ր, իսկ ինքս՝ կոլխոզի հարվածային հովիվ։

Այս բոլորը ես ականջովս լսեցի, որովհետև դպրոցից գաղտնի ծլկվել էի Մարաձոր և հարցաքննության ժամանակ ականջս դրել էի նրանց գրասենյակի դռանը։

— Զայդոն որ չի գողացել, բա ու՞ր կորավ ասլան Ասարս,— մտմտաց ուստա Խաչոն, երբ երեքով միասին վերադառնում էինք մեր գյուղը։

Ես չլսեցի, թե նախագահն ինչ կարծիք հայտնեց, որովհետև նրանց ետևից քայլում էի թաքուն, մի հարյուր քայլ հեռու, որ չասեին. «Այ տղա, ինչու՞ ես դասերը թողած ընկել շան ետևից»։

Ուստա Խաչոն ինքն էր նորոգում իր բրիգադի փայտեղենը։ Հանդ գնալիս գործիքները լցնում էր իր պապենական խուրջինի մեջ ու դնում սայլի վրա։ Աշխատանքից ազատ ժամերին էլ հարևանների համար դուռ ու սեղան էր սարքում։

Այդ օրը առավոտյան հայրս մեր բակից կանչեց.

— Ուստա՛ Խաչո, այ՛ ուստա Խաչո, թե որ ժամանակ ունես, արի՝ մեր էս խարխլված աթոռները պնդացրու՛։

— Աչքի՛ս վրա,— պատասխանեց ուստան ու գնաց իր գործիքները բերելու։ Մի քիչ հետո դուրս եկավ սաստիկ զարմացած ու շփոթված։— Խնամի՛ Վարդան,— ասում է,— գործիքներիս խուրջինն էլ է կորել։ Չգիտեմ, գողացել են, թե ինքս եմ թողել Լանջատափում։

Ուստան իր խոսքը դեռ չավարտած՝ քայլերն ուղղեց դեպի Լանջատափ, որ գտնվում է գյուղից ինը-տաս կիլոմետր հեռու։

Ես թաքուն ծլկվեցի նրա ետևից։

Մենք զրույց անելով հասանք նոր ցանած արտը, որ արդեն ծլել ու շողշողում էր աշնան մեղմ արևի տակ։ Այնտեղ էր Ասարը, մարմնով թփի ստվերում, թաթերը դրած խուրջինի վրա, քաղցից նվաղած և անշարժ։ Մեզ տեսնելով նա մի թույլ կլանչոց հանեց և հազիվ շարժեց իր գեղեցիկ պոչը։

— Վա՜հ,— զարմանքով գոռաց ուստա Խաչոն,— խե՜ղճ անասուն... Տասն օր սոված ու ծարավ նստել է սարում, որ պահպանի իր տիրոջ ապրանքը։ Լավ էր շան հավատարմությունը, բայց աչքերս էսօր տեսնում եմ ավելի մեծ բան։

Ասարին գյուղ փոխադրեցինք բեռնատար մեքենայով։ Երբ նրան մեքենայից իջեցրին, արդեն անշնչացած էր։

Իմ արցունքները՝ ոչինչ։ Լաց էր լինում ինքը, ուստա Խաչոն, մեր լուրջ ու պատկառելի բրիգադավարը։ Ամբողջ մեր թաղն էր հառաչում։ Կարծես մեռել էր բոլորիս հոգուն մոտ և թանկագին մի էակ։

— Տոնավաճառ տար նրան,— ասում է Պետյայի մայրը,— թող քեզ հաջողվի իմանալ, թե ում ուլիկն է։

Տոնավաճառում աղմուկ ու իրարանցում է։ Այնտեղ բազմազան կրպակներ կան, լիքը մարդիկ, սայլակներ։



digitised by A.R.A.R.@



# ԱՀԻՑ ՈՒԺԵՂ Է, ՔԱՆ ՄԱՀԸ

Իմ քեռանք ունեին ահագին չափի խոշոր մի գամփռ, անունը՝ Պալլաս։

Ո՞վ էր դրան տվել պատերազմի բաջ աստվածուհու անունը, չեմ կարող ասել։ Բայց հիշում եմ, որ մեր այդ պոչավոր Պալլասը անասելի ծույլ էր ու վախկոտ։

Ամբողջ օրը մրափում էր պատերի շվաքում և պառկում էր հաչել անցորդի վրա, ծանոթ լիներ, թե՝ անծանոթ։ Շների փողոցային գզվռտոցի ժամանակ պոչը կծկում էր ու մտնում դեզի ետևը։

Իսկ ձմռան գիշերներին, երբ գյուղի շուրջը թրև էին գալիս գայլերը և մինչև իսկ բակերն էին մըտնում, որ շուն փախցնեին, Պալլասը վախից գլուխը կորցնում էր։ Նա լեղաճաք զարկվում էր այս ու այն փակ դռանը, բարձրանում էր խոտի դեզը, այնտեղից էլ թռչում կտուրը և երդիկից իրեն գցում էր ներքև՝ թոնրի շուրջը քնած մարդկանց գլխին։

Քեռիս, լինելով գիտակից ընկեր, միայն ծիծաղում էր Պալլասի վրա։ Իսկ պապս մեռնում էր ամոթից։ Գյուղացու համար վախկոտ շուն ունենալը նույնքան անպատվաբեր էր, որքան լծի տակ նստող եզ կամ հարբեցող որդի։

— Ա՛յ, սատկես հա,—փնչում էր իմ պատվասեր պապը։— Արջի տեսք ունի, լպստրակի սիրտ։ Մեզ խայտառակեց է՛լի ամբողջ Ապարանի շըրջանում։

Սառնամանիքն այն տարի այնքան ուժեղ էր, որ դպրոցը մի շաբաթով փակեցին։ Ես էլ դասագրքերս առա ու նորից գնացի պապիս գյուղը։ Երեկոյան հյուր եկավ նաև քրդական կոլխոզի նախագահ Աբդալե Զաթոն։ Նա իմ Անդրեաս քեռու քիրվան էր, այսինքն՝ բարեկամը։ Իսկ նրա հայրը եղել էր պապիս քիրվան։

Կերանք, խմեցինք, և բոլորիս համար թոնրի չորս բոլորը, գետնի վրա անկողիններ սարքեցին։ Կոլխոզներն այն ժամանակ դեռ նոր էին, և մեր շրջանի գյուղերում մարդիկ շարունակում էին ապրել իրենց պապենական կիսագետնափոր տների մեջ։ Քեռանքս պատվավոր հյուրի համար առանձին սենյակ չունեին։ Ուստի քիրվա Զաթոյի համար նույնպես տեղաշոր պատրաստեցին թոնրի մոտ։

— Էդ սատկելու շունը վա՛յ թե գիշերը նորից իրեն երդիկից գցի,—փնթփնթաց պապս քեռուս ականջին։—Համ հյուրին կվախեցնի, համ էլ մեզ քրդի մոտ կխայտառակի։

— Բա ո՞նց անենք, ա՛յ հեր,—ինձ աչքով արեց քեռի Անդրեասը։

Պապս մի քիչ մտածեց ու գտավ ելքը.

— Երդիկը պինդ փակեք, չկարողանա բաց անել ու ներս ընկնել։ Թո՛ղ գայլերը տանեն, ու պրծնենք էդ անպետքից։

Ես ու քեռիս բարձրացանք տանիք, երդիկի վրա մի ծանր սալաքար դրինք ու ետ եկանք։ Մի քիչ հետո նավթի լամպը մարեցին և բոլորը խորը քուն մտան։ Ես միայն արթուն մնացի։ Ինձ



Հանկարծ մի կին կանչում է Պետյային.

— Է՜յ, մանչուկ, այդ իմ ուլիկն է, տուր ինձ։

Բայց Պետյան զգույշ էր։

Ոչ մի օտար մարդու չի տա ուլիկը, մինչև չիմանա, թե ով է նրա տերը։

digitised by A.R.A.R.@

հետաքրքրում էր խեղճ Պալլասի վիճակը։

Հնամյա տան ծերպերի մեջ բուքը վզզում էր ու կաղկանձում։ Լսվեց Պալլասի տագնապալի գայլա-հաչը, և նրա ձայներից ես կռահեցի, որ նա կտուրն է ելել։ Պտույտ էր գալիս երդիկի շուրջը և լեղապատառ կլանչում։ Շուտով տանիքում սկսվեց մի կատաղի գզվռտոց։ Պարզ էր, որ գայ-լերը բռնել են մեր թշվառ Պալլասին։ Փշաքաղ-ված մարմնով ես երկար լսում էի հոշոտվող շան ողբալի խոխոցները, մինչև որ տանիքում տիրեց գերեզմանային լռություն։

Մթի մեջ պապս երկու անգամ հազաց ու կո-կորդը մաքրեց։ Ուրեմն նրա քունն էլ չէր տա-նում։

Առավոտյան քեռիս ինձ կամացուկ ձայն տվեց.

— Արամ, վեր կաց՝ գնանք տանիք ու տես աշ-խարհի բանը։

Ես շտապ հագնվեցի ու քեռուս հետ բարձրացա տանիք։ Պալլասը ժանիքները ամուր խրած վա-ղուց արդեն սատկած գայլի բուկը, պառկել էր նրա կողքին։ Սառած արյան շիթեր կախվել էր շան ականջից և բրդերը ցրիվ էին եկել երդիկի մոտ։ Մահաբեր վտանգի պահին մեր փոքրիկ Պալլասն այնուամենայնիվ զգացել էր, որ փրկությունը դի-մադրելու մեջ է, և թշնամուն ցույց էր տվել իր ժանիքները։ Եվ հիմա չէր ուզում գայլի բուկը բաց թողնել։ Քեռիս վրան գոռում էր, համոզում էր, բացում տալիս, բայց չէր օգնում։ Մեր աղմուկի վրա կտուր բարձրացան նաև պապս ու քեռիս Զաթոն։ Նրանք բռնեցին գայլի պոչից, ես ու քե-ռիս՝ շան ոտքերից, և սկսեցինք մեր ամբողջ ու-ժով քաշել։ Այդ էլ չօգնեց։ Ավելի շուտ շան ոտքե-րը կպոկվեին մարմնից, քան նրա ժանիքները՝ գայլի բկից։

Ես մտածում էի, որ Պալլասն այդ ոչնչացած գայլից իր գիշերային բոլոր տառապանքների վրեժն է լուծում։ Սակայն շուտով համոզվեցի, որ դա վրեժ չէր, այլ՝ բոլորովին ուրիշ բան։ Մենք մտա-ծում էինք, թե էլ ինչ հնարքով կարելի է Պալլա-սին գայլից պոկել, երբ քեռակինս ներքևից իր ամուսնուն ձայն տվեց.

— Անդրո՛, մի էդ երդիկը բա՛ց արեք, է՛։ Թոնդի-րը պետք է վառեմ։

Քեռիս ծանր սալաքարը դեն հրեց ու վերցրեց երդկալը։ Այն ժամանակ Պալլասն անմիջապես թողեց անկենդան գայլի բուկը և սարսափահար կլանչելով իրեն երդիկից վար նետեց։

# ՈՎ ԻՆՉԻ Է ԱՐԺԱՆԻ

Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ



Մեր մաքրասեր Քնարիկին
Նոր վերարկու անենք նվեր.
Կոկիկ հագած Արամիկին՝
Սիրուն գլխարկ, լավ կոշիկներ.
Իսկ Վանիկին, գիժ Վանիկին՝
Մի հին բլուզ գցենք հագին,
Փնթի մարդուն այդ կսազի,
Թող կեղտոտի ինչքան կուզի։

Աշխատասեր Քնարիկին
Տանք նոր տետրեր ու պայուսակ,
Գերազանցիկ Արամիկին՝
Լավ-լավ գրքեր, խաղեր, գնդակ,
Իսկ Վանիկին, ծույլ Վանիկին,
Որ չգիտի դասը կարգին,
«Այբբենարան» աշակերտի,
Որ տառերը նորից սերտի։






Նկ. Հ. ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ

Կինը բռնեց Ուլիկին ու քաշեց իրենը։ Պետյան էլ իր կողմն էր քաշում։ Քիչ էր մնում կեսից ճղեն խեղճ ուլիկին։

Շուրջը մարդիկ ծիծաղում են, իսկ ու-լիկը վախից գոռում է։



digitised by A.R.A.R.@



# Թուխսը

Էդ. Շահիրյան

Նկ. Ռ. Սութաջյանի

Մուքելենց թաղում առավոտ ծեգին բոլորից շուտ ճռռում էր Մանուշակ մայրիկենց դուռը։ Հողաթափերը քաշքշացնելով, պառավը դուրս էր ելնում տնից, կանչում Ալաբաշ շանը, ձեռքի հացի կտորը գցում առաջը, և հարմար պահ ընտրելով, ծառից կապած և ծայրն օղ արած պարանը հագցնում նրա վիզը։ Ալաբաշը ծառս էր լինում ետևի ոտքերի վրա, կարմիր լեզուն հանած հևիհև ծմրում էր և դունչը երկարում դեպի Մանուշակ մայրիկի գոգնոցի գրպանը։

—Մ՛ռ, էս էլ կեր,—փաղաքուշ տոնով ասում էր պառավը և գրպանում պահած հացի կտորը գցում շանը։

Ալաբաշը օդում բռնում էր հացը, մի վայրկյանում խժռում, և պոչով գետինը սրբելով, շարունակում անհանգստացնել տիրոջը։

Այնուհետև Մանուշակ մայրիկը մոտենում էր հավաբնին և կամացուկ արձակում փականքը։ Թոթռալով դուրս էին գալիս սև ու սպիտակ հավերը և մի ոսկեփետուր աքլոր։ Մանուշակ մայրիկը մեկ-մեկ բռնում էր հավերին, գգվանքով շոյում գլուխները և ստուգելով ազատ արձակում։

— Մի ութ-ինը ձու էլ էսօր կհավաքեմ,— քթի տակ մրմնջում էր նա։

Բայց պատահեց այնպես, որ գլխին խոպոպիկ ունեցող Սևուկ հավը քանի օր շարունակ ձուն կորցրեց։ Մանուշակ մայրիկը շատ դես ու դեն ընկավ, որ գտնի Սևուկի նոր բույնը, բայց իզուր։ Քանի օրից հետո ինքը՝ Սևուկն էլ կորավ։

—Աղջի, Զավահիր, հավս գետինը պատռեց մտավ մեջը,—դարձավ նա պատուհանի մոտով անցնող հարևանուհուն։

—Աղվես-մաղվեսի ճանկ ընկած չլինի, Մանուշակ մայրիկ, ետ կգա, ո՞ւր պիտի գնա,—հանգստացրեց Զավահիրը։

Բայց Սևուկը չկար ու չկար...

Մուքելենց թաղում առավոտ ծեգին բոլորից շուտ ճռռաց Մանուշակ մայրիկենց դուռը։ Հողաթափերը քաշքշացնելով, պառավը դուրս եկավ։ Դուրս եկավ և ի՜նչ տեսնի։ Սևուկը թևերը լայն տարածած ծվարել է չեմին, իսկ Ալաբաշը նրա կողքին պառկել ու հսկում է, որ մարդ չմոտենա։ Մանուշակ մայրիկը աչքերին չհավատաց, երբ Սևուկի տակից դուրս եկան փոքրիկ, դեղնավուն ճուտիկներ ու ծվծվալով սկսեցին պտտվել մոր շուրջը։

—Աղջի, էս ի՞նչ բան էր,—զարմացած բացականչեց նա,—հավը թուխս է նստել։

Հենց նույն օրը Մուքելենց թաղում բոլորն իմացան, որ Մանուշակ մայրիկի կորած հավը ետ է եկել՝ տասնհինգ ճուտ ետևից։ Թխսատեղն էլ եղել է խոտի մարագը։

Մինչև կեսօր Մանուշակ մայրիկը ճուտիկներով էր զբաղված։ Նրանց փափուկ կեր էր տալիս։

—Կերե՛ք, կերե՛ք, իմ անուշներ,—խանդաղատանքով խոսում էր Մանուշակ մայրիկը և ավելացնում նրանց կերը։





Օգնության հասավ մի խելամիտ մարդ։

— Թող ձեզանից յուրաքանչյուրն իր ձեռքը մի քիչ խոտ վերցնի,—ասաց նա,—ում խոտը ուլիկն ուտի, նա է ուլիկի տերը։

digitised by A.R.A.R.@




Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Արամի շունչը կտրվում էր, կողքը ծակում, բայց նա վազում էր ու վազում։ Հետևից լսվում էին մոտեցող ոտնաձայները և հեռվում՝ դպրոցի բակում հավաքվածների աղմուկը, որ նա դեռևս պարզ լսում էր. մանավանդ, երբ քայլերը դանդաղեցնում էր շունչ առնելու համար։

Կալերին հասնելով նա թեքվեց դեպի աջ ու մի պահ կանգ առավ։ Ո՞ւր գնալ. առջևում այգիներն էին, որտեղ նա ապահով կարող էր թաքնվել, թե չլինեին այգեպանի՝ Հակո քեռու շները։ Արամը լավ էր ճանաչում այդ կատաղած գամփռներին և վախենում էր նրանցից։ Աջ կողմում մարագներն էին։ Մարագներից մեկում կարելի էր դարմանի մեջ պահվել, և ոչ ոք չէր տեսնի նրան։ Նա նետվեց դեպի մարագի բաց դուռը և միայն ներսում սարսափած նկատեց, որ մարագը դատարկ է։ Դե, իհարկե, հունիսին ի՞նչ դարման։ Նա շտապ ծածկեց մարագի դուռը և տախտակների արանքից նայեց դուրս։ Ճիշտ նույն պահին երևաց Հրայրի եղբայրը՝ Գնելը, որ հետապնդում էր նրան։ Դա մի հաղթանդամ երիտասարդ էր, կոլխոզի ձիապանը։ Նա շտապ աջ ու ձախ նայեց և, ըստ երևույթին, ավելի հավանական գտավ, որ Արամը թաքնված կլինի այգում՝ վազեց առաջ ու կորավ ծառերի մեջ։ Քիչ հետո այգու մյուս ծայրից լսվեց շների հաչոցը։ Արամն հասկացավ, որ Գնելը բավական հեռացել է, և ազատ շունչ քաշեց։ Հետո նա զգույշ դուռը բացեց և դուրս փախավ։ Վտանգը դեռ լրիվ չէր անցել, դեռ կարող էին իրեն նկատել, դրա համար էլ նա արագ անցավ մարագի մյուս կողմը, կտրեց ինչ-որ մեկի տնամերձ այգին ու մտավ գյուղամեջ տանող նեղ ճանապարհը։ Ասենք դա իսկի էլ ճանապարհ չէր, այլ առվի համար թողած նեղ ու երկար մի տարածություն, որի երկայնքով աջ ու ձախ կողմերում բարձրանում էին տնամերձ այգիների կավե ցածրադիր պատերը։ Մեջտեղից հոսում էր գյուղի միջով անցնող մեծ առուն, իսկ պատերի տակով հազիվ մի մարդ կարողանար անցնել, այն էլ մերթ աջ, մերթ ձախ ափը թռչելով։

Արամն այստեղ միայն հանգստացավ։ Նա գիտեր, որ ոչ ոք չի անցնում այս ճանապարհով, բացի ջրվորներից։ Նստելով պատի տակ և բոբիկ ոտքերը կախելով սառը ջրի մեջ, նա սկսեց հաշիվ տալ իրեն։ Այդ ինչպե՞ս եղավ։ Արամի աչքի առաջ պատկերացավ Հրայրը՝ ճեղքված գլխով, արյունլվիկ դարձած դեմքով, ականջներում դեռ հնչում էր նրա աղեկտուր ճիչը. «Վա՜յ, մայրիկ ջան, մեռա՜»։ Չէ՞ որ նա միտք չուներ խփելու և քարը հենց այնպես, վախեցնելու համար էր վերցրել։ Այդ ինչպե՞ս եղավ, որ խփեց։ Ինչ-որ բան հիշելով, նա շոշափեց գրպանը և տեսավ, որ էլի քար ունի մոտը։ Դա մի սրածայր քար էր։ Նա քարը նետեց ջրի մեջ ու նրան թվաց, թե մի ծանր բեռից ազատվեց։ Եվ իսկապես, ինչպե՞ս է, որ վազելիս ցած չէր գցել, չէ՞ որ խանգարում էր իրեն։ Ինչ զզվելի բան է քարը, ճիշտ են ասում մեծերը, թե քարի մեջ արյուն կա։

Նա վեր կացավ և սկսեց առվի հոսանքի հետ ցած իջնել։ Ուզում էր իմանալ, թե ինչ է եղել Հրայրին, բայց միաժամանակ վախենում էր որևէ մեկին հանդիպել. հանկարծ ու մի բան պատահած լիներ։ Նա քայլերն արագացրեց։ Գոնե Վազգենը պատահեր. նա ամեն ինչ կպատմեր։ Վազգենին հիշելով, Արամը մի տեսակ ուրախություն զգաց։ Այ, Վազգենն իսկական տղա է։ Բայց ինչո՞ւ նա մոտ չեկավ և իրեն չբաժանեց Հրայրից։ Չէ՛, Վազգենն էլ մի բան չի։ Ո՞վ գիտի, հիմա որ տեսնի, կգնա Գնելին կասի իր տեղը։ Արամն հիշեց, թե ինչպես դեռ վերջերս, դասերի ժամանակ, երբ ինքը ածուխով գրել էր նստարանի վրա, իսկ Մանուկը նստել էր ու նոր լվացած շալվարը կեղտոտել՝ բոլորը իմացան, որ ինքն է արել։ Պարզ է, որ Վազգենն էր ասել, ուրիշ ո՞վ էր տեսել որ։ Իսկ

Բեբեն գլուխն օրորեց, մտածեց, մտածեց և թռավ կնոջ կողմը։

Ուլիկն սկսեց ուրախ թռչկոտել, քսմսվել, լիզել կնոջ ձեռքերը։ Այժմ Պետյան համոզվեց, որ Բեբեն գտել է իր տիրոջը։



digitised by A.R.A.R.@



սայլակի քնարի պատմությունը... Չէ՛, ավելի լավ կլիներ, որ մեկ ուրիշը գար։ Բայց ո՞վ... Արամն սկսեց մտքով արագ փնտրել։ Զարմանալի բան, բոլորն էլ իրեն վատություն էին արել։ Այդքան աշակերտ կա դպրոցում և ինքը մենակ է, ոչ ոք իր հետ ընկերություն չի ուզում անել։ Ինչո՞ւ։

Հանկարծ նրա սիրտն սկսեց լցվել և ուժեղ խփել։ Դե, իհարկե, Շուշանը։ Նա ոչ ոքի նման չի և իր հետ միշտ էլ լավ է վարվել։ Հիմա կգնա Շուշանենց տուն և ամեն ինչ կիմանա։ Չէ՞ որ Շուշանն էլ էր այնտեղ։

Արամը առուն թռչելով անցավ և քայլերն ուղղեց դեպի Շուշանենց տունը։

Տեսնես ի՞նչ է եղել, բան հո չի՞ պատահել։ Ի՞նչ կանեն իրեն. կբանտարկե՞ն, կծեծե՞ն...։ Իսկ ինչո՞ւ պիտի ծեծեն, ի՞նչ է արել որ։ Ոչի՛նչ։ Իսկ ինչո՞ւ է խփել, թող այդ էլ հարցնեն, այո՛, թող այդ էլ հարցնեն։

Եվ նրա սիրտը նորից լցվեց զայրույթով։

«Թող այդ էլ հարցնեն։ Ինչո՞ւ էր մեջ ընկնում։ Ես ուզում էի դաս տալ Արշակին, որ մյուս անգամ չհամարձակվի խոսքից հրաժարվել։ Ի՞նչ էի անում որ, բռնել էի ականջից և ուզում էի... ոչինչ էլ չէի ուզում, միայն ականջն էի քաշում։ Որտեղից էլ եկավ Հրայրը, ցցվեց առաջս ու ասում է. «Թո՛ղ տղային»։ Դրան տես, պաշտպան էր կանգնում ու դեռ ձեռքիցս բռնել զոռ էր տալիս։ Թե մի ուրիշ սուտ չէր տա, իսկի էլ չէի ընկնի... այդքան մարդու մոտ. Շուշիկն էլ էր այնտեղ։ Բոլորը տեսան, ես քարը հանեցի, որ վախեցնեմ։ Իսկ որ նա ինձ ցած գցեց՝ այդ չե՞ն ասում...»

Արամը կանգ առավ Շուշանենց տան ցանկապատի մոտ։ Շուշանը պարտեզն էր քաղհանում։

— Շուշի՜կ,— ձայն տվեց նա և զգաց, որ ձայնը հազիվ է դուրս գալիս։

Շուշիկը գլուխը բարձրացրեց, նայեց Արամին և առանց մի խոսք ասելու ներս գնաց։ Երբ նա դռների մոտ էր, Արամը մի անգամ էլ ձայն տվեց.

— Շուշի՜կ...

Բայց Շուշիկը կարծես չլսեց նրան։ Արամն ասես քարացել էր տեղում։ Այդ ի՞նչ պատահեց, Շուշիկն է՞լ չի ուզում իր հետ խոսել։ Չլինի՞ թե...

Ու տեղից պոկվելով նա վազեց դեպի դպրոց։ Նրա շունչը կտրվում էր ինչ-որ վատ նախազգացումից։

Դպրոցի բակում մարդ չկար. միայն պահակի փոքրիկ տղան էր կանաչների վրա նստած խաղում։ Արամը մոտեցավ երեխային ու հարցրեց.

— Սուրի՛կ, Հրայրին ո՞ւր տարան։

— Չգիտեմ,— առանց գլուխը բարձրացնելու պատասխանեց տղան։

— Իսկ ի՞նչ էր եղել նրան, չգիտե՞ս, ի՞նչ էր եղել։

— Մեռավ,— ասաց երեխան անտարբեր, ապա շուռ գալով նայեց Արամին և նույն հանգստությամբ կրկնեց,— մեռա՛վ...

— Ի՞նչ, ի՞նչ ես ասում,— ու նա ուժգին ցնցեց Սուրիկի ուսը։ Երեխան ցավից ճչաց և սկսեց լաց լինել։ Արամը թողեց նրան ու փախավ։



Երջանիկ ավլուհին գնաց տուն, գտած ուլիկին կապելով իր սայլակին։

Երեխաներ, դուք երևի գլխի եք ընկնում, որ Բեբեն այսուհետև այլևս մենակ հեռավոր զբոսանքի չի գնա։ Այսքանն էլ նրան հերիք էր։

digitised by A.R.A.R.@

Թե ուր էր գնում, ինքն էլ չգիտեր։ Նա կտրեց անցավ բամբակի դաշտը, մտավ առվույտների մեջ ու շնչահեղձ ընկավ կանաչ, բուրավետ խոտերի վրա։ Նրա կոկորդում ինչ-որ բան էր քարացել։ Ուզում էր լալ, բայց չէր ստացվում. հուզմունքն ու զայրույթը, անակնկալ դժբախտությունը քարացրել էին սիրտը։ Նա կատաղորեն սկսեց ոտներով դոփել գետինը, ճանկերով պոկել խոտը։ Ու թե ինչքան մնաց պառկած, ինքն էլ չգիտեր։ Աչքերի առաջ անընդհատ երևում էր Հրայրը՝ արյունլվիկ դեմքով։

Արդեն բոլորովին մթնել էր, երբ նա ոտքի ելավ և հարբածի նման օրորվելով քայլերն ուղղեց դեպի գյուղ։ Նրա համար արդեն մեկ էր, թե ում կհանդիպի. միայն թե չհանդիպի Գնելին։ Նրանից հիմա Արամը սարսափում էր...

Իրենց տան մոտ նա մի պահ կանգ առավ, բայց սիրտ չարեց ներս մտնել։ Նորից նրան սարսափ համակեց և ճանապարհից դուրս գալով, պատերի տակով անցավ գյուղի մյուս ծայրն ու մոտեցավ Հրայրենց տնամերձին։ Բարեբախտաբար նրանք շուն չունեին։ Մթությունից օգտվելով նա գողունի մոտեցավ տան պատուհաններին։ Սիրտն ուժեղ խփում էր։ Ներսից ոչ մի ձայն չէր գալիս։ Դա և՛ վախեցնում էր Արամին, և՛ ուրախացնում։ Եվս երկու քայլ, և նա պատուհանի առաջ էր։ Ձեռքերը գցելով երկաթե ճաղերին, Արամը գլուխը մոտեցրեց ապակուն ու ասեղնագործ վարագույրների արանքից ներս նայեց։

Միանգամից ասես գիշերը լուսացավ։ Կոկորդում ամրացած հանգույցը բացվեց ու նա խորը շունչ քաշեց, այնպես, որ տնքոցի, թե հառաչանքի նման մի բան դուրս թռավ նրա բերնից։

Հրայրը ներսում էր։ Ճիշտ է, գլուխը փաթաթած էր վիրակապով, բայց նա հանգիստ էր ու դանակով ինչ-որ բան էր շինում փոքրիկ քրոջ համար։ Արամն հիպնոսվածի նման կպել էր՝ երկաթե ճաղերից ու պոկ չէր գալիս և այդպես էլ չզգաց, թե ինչպես Գնելը ծանր ոտները թփթփացնելով մտավ բակ։ Նա դեռ հեռվից նկատեց Արամին և մոտենալով, ուժեղ բռնեց նրա ուսերից։ Արամը նույնիսկ փախչելու փորձ էլ չարեց և, երբ Գնելը Արամի դեմքը ուժով շուռ տվեց իր կողմը, նա պատուհանից թափանցող լույսի տակ տեսավ, որ տղայի դեմքն ամբողջովին արցունքոտված է։ Արամը լալիս էր։

## ԳԱՐՈՒՆԸ ԵԿԱՎ

Գարունը եկավ
Կանաչ հագուստով,
Մտավ մեր այգին
Ծաղկած ծառերով:

Ծիտն է ծլվլում
Բարդենու ճյուղից,
Ծիլն է արթնանում
Գորշ հողի տակից:

Փոքրիկ թռչունն էլ՝
Կտցին մի ծաղիկ,
Թռչում է դեպի
Իր բույնը մոտիկ:

**Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**

(Երևանի Վ. Ղուկասյանի անվան պիոներների պալատի գրական խմբակի անդամ)

## ԹԻԹԵՌՆԻԿՆԵՐ

Թիթեռնիկներ սպիտակ,
Թիթեռնիկներ թովուն,
Թռե՛ք աշխույժ և ուրախ,
Արդեն գարու՛ն է, գարու՛ն:

Արդեն ծլել են գարնան,
Կանաչ ծիլերը սիրուն,
Ձնծաղիկներն աննման
Հիմա ձեզ են սպասում:

Եկե՛ք, եկե՛ք դուք թեթև,
Թռեք կանաչ մարգերում,
Թիթեռնիկներ ոսկեթև,
Թիթեռնիկներ թովուն:

**ԳԵՎՈՐԳ ՎԵՐԴՅԱՆ**

(Երևանի Վ. Ղուկասյանի անվան պիոներների պալատի գրական խմբակի անդամ)



digitised by A.R.A.R.@

# Սիմոնը

ԱՐՏ. ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

Նստել է Սիմոնը ծառի տակ՝ գիրքը ծնկներին։ Իսկ ծառի վրա տանձեր են, ի՜նչ տանձեր։ Ով չէ, բայց Սիմոնը գիտի այդ տանձի համը. որ կծում ես, ոնց որ շաքար լինի, հալվում է բերանումդ։ Անցյալ տարի...

Սիմոնը նստած տեղից նայում է չորս կողմ՝



թփերի մեջ տանձի պոչ նկատելու համար, բայց չի գտնում։ Որտեղի՞ց գտնի. ամեն առավոտ մայրիկը հավաքում է գետնին թափված տանձերը։ Սիմոնը չարությամբ նայում է վեր։ Անիծածները այնքան էլ ամուր են կպել ճյուղերից։ Հակառակ է, է՜լի, մի քամի էլ չի անում, որ թափվի։ Սիմոնը նայում է գրքին. տառերը մեծանում, մեծանում, կլորանում են, հետո մի կողմից սրվում, ու նա տեսնում է տանձի պոչը։ Սիմոնը բարկանում է։

— Հետո էլ ասում են բնությունը իմաստուն է։ Ո՞վ է ասում, սո՛ւտ է, պոչավոր սուտ (պոչ բառի վրա նա նորից վերև է նայում)։ Բնությունից հիմար բան չկա։ Բա ինչու՞ է այնպես արել, որ տանձերը այդքան բարձր են լինում, հը՞։ Ի՞նչ կլիներ, որ, օրինակ, գետնին թափված լինեին պոմիդորի պես։ Չէ՛, դրա համար էլ անպայման պետք է կռանալ։ Օրինակ, մոշի պես, որ ուղիղ գնաս, բացես բերանդ ու ընկնի մեջը։ Ասենք մոշն էլ ծակում է։ Բա ինչի՞ պես... Չէ՛, ոչ մի հարմար բան չկա։ Բնությո՛ւն...

Իսկ առաջ ուրիշ էր։ Կարդացել ենք, գիտենք, է՜լի։ Մի ծուկ կբռնեիր. ցույց կտայիր, թե ուզում ես մորթել։ Նա էլ կբացեր բերանը ու մարդկային լեզվով կաղաչեր. «Մի սպանիր, ընկեր Սիմոն, թող որ գնամ ազատ ծովը։ Փոխարենը ինչ ուզես՝ կտամ»։ Մի քիչ չեմուչում կանեիր ու բաց կթողնեիր։ Հետո ծափ կտայի ու բազմաստո՛ն հսկաներ կկանգնեին առաջս։ «Ի՞նչ եք կամենում, ընկեր Սիմոն»։ Կասեի՝ ուզում եմ, որ այս գրքում եղած թվաբի բոլոր խնդիրները լուծված մտնեն գլուխս մեջ, որ դասս լավ պատասխանեմ։ Ասենք, ինչու՞ ես պատասխանեմ։ Ես կկանգնեմ, իսկ բազմաստոն հսկաները թող իմ փոխարեն պատասխանեն ու գրեն գրատախտակին։ Բայց, իհարկե, որ չկանգնեմ, ավելի լավ... Ախ, ի՜նչ կյանք կլիներ է՜։ Գերազանցիկ կդառնայի։

— Սիմո՜ն,— լսվեց մի ձայն։

Սիմոնը ուշքի եկավ ու ականջ դրեց։ «Մայրիկն է, ինչն իրեն խոսեցնա, ձայն հանե՞մ, թե չէ։ Ո՞նց իմանամ գործի է ուզում դնել, թե կանչում է, որ ճաշ ուտեմ, հը՞»։

Ծառի ճյուղերը մի կողմ գնացին։ Սիմոնը իսկույն թեքվեց, գետնին ընկած գիրքը նորից ծնկներին դրեց ու երկու ձեռքով ամուր բռնեց գլուխը՝ իբր շատ է խորասուզված։

— Ուրեմն այսպես. բրածո՝ սողուններ։ Մողես, լորտու, օձ։

— Սիմոն ջան, արի տուն,— կամացուկ ասաց մայրը։

— Մողեսը սառնարյուն կենդանի է...— շարունակեց Սիմոնը։

— Մի քիչ փայտ ջարդիր։

— Դու լավ է, է՜լի, հետո էլ ասում ես գերազանցիկ դառի։ Արի փա՛յտ ջարդի, արի հա՛ց կեր, արի ջո՛ւր խմի։ Իսկ Սաթիկն ի՞նչ է անում, թող ջարդի, էլի։

— Ախր ո՞ւմ ես այդպես քաշել, ա՛յ ծույլ,— տրտնջաց մայրը ու հեռացավ։

— Ծո՜ւյլ,— վիրավորվեց Սիմոնը,— բոլորն էլ մի գլուխ ասում են, որ ծույլ եմ։ Բայց որ լավ մտածում եմ, տեսնում եմ, որ իրենք են ծույլ։ Ծույլ



digitised by A.R.A.R.@

չե՞ն։ Բա ինչու՞ փայտը իրենք չեն ջարդում, ինչու՞ առավոտյան կոշիկներս չեն մաքրում, ինչո՞ւ Վարդանն ու Կարոն իրենց տետրերը չեն տալիս, որ ես արտագրեմ, կամ իմ տեղը չեն գրում։ Ու դեռ ընկերներ են։ Շատ ենք տեսել ձեր նման ընկերներ։ Այն օրը, ես Ֆիզկուլտուրայի դասից փախա, որ զուր տեղը չթուլանամ, խնդրեցի, որ իմ տեղը «ներկա» կանչեն, բայց ալարեցին... Բա ես ո՞նց «ներկա» կանչեցի Սերժիկի փոխարեն։ Ճիշտ է՝ չէի տեսել, որ նորից դասարան է մտել ու երկուսս էլ իրար հետ «ներկա» ասացինք, ճիշտ է, դասատուն ինձ դիտողություն արեց, բայց հո չզլացա, հո կանչեցի։ Է՜, լավ...

Սիմոնը ուզում է «է՜, լավ»-ի հետ ոնց որ կարգին է թափ տալ ձեռքը, բայց ալարում է։ Ինչո՞ւ թափ տա, հո մարդ չկա, որ տեսնի։ Նա նորից վերցնում է գետնին ընկած գիրքը, բացում դասը ու կարդում.

— Իժը թունավոր...

Նրա մարմնով սարսուռ է անցնում։ Գրքի վրա նկարված է մի օձ, ի՜նչ օձ՝ օղակ-օղակ գալարել է մարմինը, բարձրացրել է գլուխը, երկսայր լեզուն դուրս է հանել և իր պսպղուն աչքերը հառել ուղիղ Սիմոնի աչքերին։ Օձը... Սիմոնը աշխարհում ոչ մի բանից այնպես չի վախենում, ինչպես օձից։ Ո՛չ շունը, ո՛չ գայլը, ո՛չ առյուծն ու վագրը, ո՛չ էլ կոկորդիլոսը, որը երեխայի նման լաց է լինում ու մարդկանց կուլ տալիս, ոչ նույնիսկ մուկը նրա համար սարսափելի չեն, բայց օձը...ախր չի երևում է։ Մեկ էլ տեսար՝ սուս ու փուս եկավ, եկավ կանգնեց հեռվում, գալարվեց, առ հա՛, իրեն շպրտեց ու փաթաթվեց վզին։ Սիմոնն այդ գիտե, Սիմոնը կինոյում տեսել է։

Ու հանկարծ նրան թվաց, թե ինչ-որ բան խշշաց խոտերի մեջ։ Սիմոնն ուզեց նայել այն կողմը, բայց սիրտ չարեց։ Մի տեսակ գլուխը չէր թեքվում։ Շրշոցն ուժեղացավ։ Սիմոնը պարզ լսեց, որ խոտերը մեկին ճանապարհ էին տալիս՝ «շը՜շշ», «շը՜շշ»։ Նա ուզեց բղավել, բայց նորից սիրտ չարեց ու մեկ էլ...թ՜ըմփ, մի բան հարևանի ցանկապատից ընկավ ներքև։

— Փրկեցե՜ք, օձը՜—բղավեց Սիմոնը, վեր թռավ տեղից ու ընկավ որտեղից-որտեղ հայտնված իր ընկեր Կարոյի գիրկը։

— Ի՞նչ օձ, Սիմոն։

— Էն, որ թմփաց։

— Ի՞նչը թմփաց։

— Օձը։

— Ա՛յ խայտառակ,—ծիծաղեց Կարոն,—էն ես էի։

— Դու էի՞ր, Սիմոնը կասկածեց,—բա ինչո՞ւ թմփացիր։

— Իսկ դու որ ցանկապատից թռչեիր, չէիր թմփա՞։

— Ը՜մմ։

— Դե տեսնո՞ւմ ես։

Սիմոնը մի պահ լռեց։

— Դե ասա, հորս արև։

—Է, համը հանում ես,— բարկացավ Կարոն,— հորս արև, պրծա՞նք։

Սիմոնը համոզվեց։

— Լավ, հավատում եմ։ Բայց հիմա դու ինձ ասա. մեր կողմերում օձ շա՞տ կա։

— Է՛, լավ, դու չգիտե՞ս որ... — Կարոն ուզում էր ասել՝ չկա, բայց հանկարծ ինչ-որ բան մտածելով միտքը փոխեց ու շարունակեց,—որ կա։ Շատն ինչի՞դ է պետք, քեզ մեկն էլ հերիք է, որ կծի։

— Իսկ ի՞նչ պետք է անել, որ չկծի։

— Պետք է փախչել,—հաստատ ու լուրջ պատասխանեց Կարոն։

Հետո նրանք խոսեցին դեսից-դենից ու Կարոն իմիջիայլոց ասաց, որ վաղը դպրոցի թեթև ատլետների մրցումն է, ու բոլորը պետք է վազեն երկու հարյուր մետր։

— 200 մե՜տր,—սարսափեց Սիմոնը,—ու դու էլ պետք է վազե՞ս։

— Իսկ դու չե՞ս վազելու։



digitised by A.R.A.R.@

— Ե՞ս, ձեռ եմ առնու՞մ: Ոտքս ցավում է:

— Դե երդվիր:

— Թող տեղիցս վեր չկենամ, եթե սուտ եմ ասում:

— Ա՛յ լոդր,— Կարոն ծիծաղեց,— այդ հո քո սիրած երդումն է: Ամբողջ դարդդ էլ հենց այն է, որ մեկը քեզ տեղիցդ վեր չկացնի:

* * *

Գրեթե ամբողջ դպրոցը հավաքվել է անտառի մոտ, որտեղից տրվելու է մրցումների ստարտը: Ֆինիշը կամ մրցումների վերջնակետը նշանակված է երկու տեղ. մեկը 200 մետրի վրա՝ մեծ խնձորենու տակ, մյուսը՝ 500 մետրի վրա, որտեղ դպրոցի պարիսպն է:

Ամեն ինչ խառնվել է իրար: Թևերին կարմիր ժապավեն կապած դատավորները արագ-արագ այս ու այն կողմ են գնում, հրահանգներ տալիս, կավիճով նշումներ են անում: Մրցումների մասնակիցները հուզված դեմքերով օգնում են իրար, մեջքներին համարներ են փակցնում: Բոլորը սպորտային թեթև հագուստով են՝ մայկաներով ու տրուսիկներով: Միայն Սիմոնն է քաշվել մի կողմ, նստել մի քարի ու աշխատում է աչքի չընկնել: Ո՞վ գիտի, մեկ էլ տեսար մոռացան ու չկանչեցին: Բայց չէ՛, նկատեցին: Մոտեցավ ֆիզկուլտուրայի դասատու ընկեր Գասպարյանը:

— Ինչու՞ չես հանվում, Սիմոն:

— Ը՞ր, ոտքս ցավում է:

— Դե շու՛տ, շու՛տ: Գիտեմ քո ցավը: Մինչև տասը հաշվեմ՝ հանվիր:

Սիմոնը տնքալով սկսեց հանվել: Հանվում էր ու մտածում, որ փոքր ժամանակ շատ լավ էր, որ երանի էլի փոքր լիներ. մայրիկը գրկում էր նրան, ինքն էր հանում շորերը, հետո համբուրում էր, դնում անկողնու մեջ ու ասում. «Դե, Սիմոնչիկ, ասա բարի գիշեր», ու ինքը պատասխանում էր. «Բարի գիշեր»:

— Լույս բարի,— բրբջաց Կարոն, ու Սիմոնն զգաց, որ վերջին բառերը բարձրաձայն է արտասանել,— ինչ է, արդեն քնու՞մ ես:

Սիմոնը ոչինչ չպատասխանեց ու սկսեց տնքալ երկրորդ կոշիկի վրա:

— Հը՛, գուցե վազելու՞ ես,— չդադարեց Կարոն:

— Բա ո՞նց, ինչքան ուժերս ներեն,— պատասխանեց Սիմոնն ու մտքում շարունակեց. «Ծիծաղիր, տասը քայլ կգնամ ու ոտքս բռնած կքաշվեմ պատի տակ: Տեսնեմ ի՞նչ պետք է անեն»: Բայց այդ տասը քայլն էլ նրան մահ էր թվում:

Առաջին խմբերն արդեն սկսել էին վազել, ու երկար ժամանակ լսվում էին նրանց խրախուսողների բացականչությունները ու սուլոցները: Ծղրիդի նման ճռճռում էին վայրկյանաչափերը: Ժամանակ առ ժամանակ ֆիզկուլտուրայի դասատուն բարձրաձայն հայտարարում էր հաղթողների անունները, նրանց արդյունքներն ու հիշեցնում էր դպրոցի ռեկորդը՝ 200 և 500 մետրերի համար:

— Ստարտ են հրավիրվում Կարո Բաղալյանը, Սիմոն Գասպարյանը...

Սիմոնը լսեց մյուսների անունները: Նրա ծնկները վախից թուլացան: Նա միանգամից բռնեց ոտքը, հետո հիշեց, որ տասը քայլից հետո պետք է այդ անի ու դանդաղ մոտեցավ ստարտին: Մի ծունկը գետնին, արդեն սպասում էր Կարոն: Սիմոնը խեթ-խեթ նայեց նրան ու ինքն էլ ծնկեց:

Եվ այն է, ֆիզկուլտուրայի դասատուն ազդանշանի համար իջեցնում էր ձեռքը, երբ Սիմոնն զգաց, որ մի սառը, ողորկ բան կպավ իր մերկ ոտքին: Նա ցած նայեց, լայն բացեց աչքերը



digitised by A.R.A.R.@

հետո համկարծ վեր թռավ տեղից, գոռաց՝ «Օ՜ձը» ու սկսեց փախչել: «Օ՜ձը», բղավեց նաև Կարոն ու վազեց նրա հետ:

Սիմոնը վազում էր, ո՜նց էր վազում. ձեռքերը արագ-արագ շարժելով, ոտքերը գցելով լայն-լայն՝ խոկական ատլետի պես: Վազում էր ու թվում էր նրան, թե օձը կրնկակոխ վազում է իր ետևից: Սիմոնը նույնիսկ տեսնում էր նրա սառը, լպրծուն մարմինը իր պապղուն աչքերով: Ու վազում էր, ի՜նչ վազել, թռչում էր: Նա միայն մի վայրկյան հետ նայեց, տեսավ, որ իր ետևից մի քանի քայլի վրա Կարոն է վազում հևալով, նկատեց, որ Կարոն ուզում է կանչել «օձը», բայց չի կարողանում ու նորից գլուխ-շուռ տվեց:

Վազում էր նա, իսկ փողոցի երկայնքով կանգնած երեխաները անամոթաբար ծափ էին տալիս: «Ծաղրում են, ուզում են, որ ինձ կծի», կայծակեց Սիմոնի ուղեղում, ու նա ավելի արագացրեց ընթացքը: Հետո ճանապարհին ավելի շուտ զգաց, քան տեսավ, որ ինչ-որ կարմիր բան կպավ իր կրծքին ու չի պոկվում: Դա ավելի վախեցրեց նրան. «Սա էլ երկրորդ օձը, ավելի բարակը, կամ նույնն է, ցատկել է գլխիս վրայից, ու ես չեմ նրկատել»: Սիմոնը թափ տվեց իրեն, զգաց, որ ազատվեց կարմիր օձից ու ավելի ուժգին սուրաց:

Նա այլևս ետ չէր նայում: Միայն թե շուտ հասնի դարբասին, մտնի ներս ու փակի դուռը: Օձը դարբասի վրայից չի կարող թռչել:

Դարբասի մոտ նա մեծ բազմություն տեսավ: Այդ սիրտ տվեց նրան, ու մի վերջին թափով նետվեց առաջ: Վազում էր ու դառնությամբ մտածում. ահա իր այդ ընկեր կոչվածները շատ լավ տեսնում են իրեն հասած դժբախտությունը, բայց փոխանակ օգնության հասնելու, բացել են բերանները, ծիծաղում են ու ծափ տալիս: Ուղիղ դարբասի մոտ, իրենից երկու քայլի վրա Սիմոնը ինչ-որ կարմիր բան էլ տեսավ: Սարսափեց, ուզեց թեքել ճանապարհը, բայց թափին չդիմացավ, առաջ անցավ ու կարմիր բանին հրելով դարբասից ներս ընկավ: Ներս ընկավ դարբասից, ուզեց մըտնել դպրոց ու դուռը փակել: Բայց ուշ էր...

Նրան բռնեցին իր ընկերները, դասատուները, սկսեցին համբուրել ու վեր-վեր թռցնել, իսկ դպրոցի պահակ՝ Թաթոս դային գոռաց.

— Ա՛յ ծույլ, էդ դու՞ էիր եղնիկի նման թռչում:

Սիմոնը չգիտեր, թե ինչ է կատարվում իր հետ: Նա ահով չորս կողմն էր նայում: Մոտեցավ նաև դպրոցի դիրեկտորը, բռնեց Սիմոնի ձեռքը, բարձրացրեց ու մի անգամ էլ նայելով վայրկյանացույցին, բարձրաձայն հայտարարեց.

— Առաջին տեղը և դպրոցի ռեկորդը՝ 200 և 500 մետր տարածության վազքում, շահեց աշակերտ Սիմոն Գասպարյանը:

Սիմոնը քիչ մնաց ուշաթափվեր: Նա նորից նայեց չորս կողմը ու տեսնելով իր ետևում հևացող, ժպտուն աչքերով Կարոյին, շշնջաց.

— Լսիր, օձը ի՞նչ եղավ:

— Ոեզինից էր. Վարդանը գցեց,— կամացուկ ծիծաղեց Կարոն ու ավելացրեց,— համա վազում էիր հա...չեմպիոն...

* * *

Դուք ուզում եք իմանալ, թե հետո ի՞նչ եղավ ծույլ Սիմոնը: Վե՛րջ: Ծուլության հետքն էլ չմնաց:

Եվ, պատկերացնո՞ւմ եք, հիմա վատ էլ չի սովորում:

Ահա թե ինչպես պատահեց, որ օձը բուժեց Սիմոնին:

Նկ. Հ. ԳԱԼԵՆՑԻ



digitised by A.R.A.R.@

# Լինենք քաղաքավարի

## ԱՐԴՅՈՔ ՃԻ՞ՇՏ ԵՆՔ ԽՈՍՈՒՄ

Քեռի Արամի հարևանի տասներկու տարեկան տղան կինոյից վերադարձել էր ոգևորված, ուրախ տրամադրությամբ:

— Երևի կինոն քեզ շա՞տ է դուր եկել,— հարցրեց քեռի Արամը:

— Էն էլ ո՜նց, կլասիկ կինո էր,—պատասխանեց տղան:

— Ի՞նչն էր «կլասիկ»:

— Հասկանո՞ւմ եք, խսկական կլաս: Սկզբում, ուրեմն, տղեն հազրի է ընկնում, հետո էլ... Մի խոսքով, նա, ուրեմն, վերցնում է ընկերոջ պալտոն, շա՜տ փախ էր, իսկ հետո հասկանու՞մ եք, տղերքը իմանում են, աղջիկը չի ուզում, ուրեմն տղեն... Դե, մի խոսքով, կլաս էր:

Բայց, իհարկե, քեռի Արամը ոչինչ չհասկացավ: Տղան չկարողացավ, ինչպես հարկն է, պատմել, նա չուներ անհրաժեշտ բառապաշար:

Մի ուրիշ անգամ էլ այդ նույն տղան քեռի Արամից գրելու թուղթ ուզեց: «Անպայման լավ թուղթ», ավելացրեց նա:

— Մեր դասարանը, հասկանո՞ւմ եք, նամակ է ստացել... Մի խոսքով, Չեխոսլովակիայից: Մենք, այսպես ասած, ուրեմն, որոշել ենք պատասխանել: Կարճ ասած, հասկանու՞մ եք, պատասխանը ես եմ գրելու:

Երկու ժամ հետո քեռի Արամը գնաց հարևանի տուն: Տղան նստած էր սեղանի մոտ: Նրա տեսքը աննախանձելի էր. աչքերը կարմրել էին, ճակատը քրտնել էր, մազերը գզգզված էին: Իսկ նրա առաջ դրված մաքուր թղթի վրա գրված էր միայն. «Թանկագին պիոներներ»: Քեռի Արամը հասկացավ. տղան նորից չէր կարողացել անհրաժեշտ բառեր գտնել ու տանջվում էր: Հո չէր կարող գրել այնպես, ինչպես խոսում էր. «Ապրում ենք, մի խոսքով, հասկանո՞ւմ եք, ուրեմն, ուրախ»:

Կան նաև այնպիսինները, որոնք իրենց լեզուն աղբոտում են փողոցում լսած խուլիգանական կոպիտ բառերով ու արտահայտություններով, իսկ երբեմն էլ հայհոյում են: Երբ լսում ես այդ երեխաների խոսակցությունը, ուղղակի զզվանքդ գալիս է: Լավ կլինի, որ նրանք մտածեն մեր խելացի, գեղեցիկ և հարուստ լեզվին տիրապետելու, մաքուր հայերենով խոսելու մասին:

Իսկ ի՞նչ է պատահում, արդյոք, որ մեր դպրոցականները իրար մականուններ են կպցնում: Եվ նրանք չեն մտածում, որ դրանով վիրավորում են իրենց ընկերներին:

Վիրավորական է նաև, երբ խոսակցիդ կոպիտ ես պատասխանում: Պատկերացրե՛ք, դուք հարցնում եք ձեր ընկերոջը.

— Դու արդեն ճաշե՞լ ես:

Փոխանակ ուղղակի ասելու «այո» կամ «ոչ», նա պատասխանում է.

— Իսկ ի՞նչ է, հո քաղցած չէի մնալու:

Դուք, իհարկե, վատ կզգաք այդ պատասխանի համար: Բայց ձեր ընկերը երևի այդ մասին չմտածեց էլ, դա ուղղակի սովորություն է նրա համար:

Շատերը հաճախ օգտագործում են. «Դե լավ, խելքիդ շատ գոռ մի տուր», «Ի՞նչ ես բերանդ բացել», «Սա քո խելքի բանը չի» և նման վիրավորական արտահայտություններ:

Ժամանակը չէ՞, որ այդպիսի երեխաները հրաժարվեն լեզվական այս աղբից: Պետք է ընդարձակել բառապաշարը, ավելի շատ նոր բառեր սովորել: Բայց դա հարկավոր է անել ոչ թե մեքենայորեն, այլ խելացի ձևով: Ամեն բառ չէ, որ պետք է յուրացնել ու օգտագործել:

## ՀԻՇԻ՛Ր

**1. Կարդալիս աշխատիր հիշել քեզ համար նոր բառերը:**

**2. Երբ շարադրություն կամ նամակ ես գրում, աշխատիր ընտրել ամենից ճիշտ և հարմար բառերը, որպեսզի ընթերցողը կարողանա պարզ հասկանալ քեզ:**

**3. Մի՛ աշխատիր խելացի ձևանալ: Օգտագործի՛ր միայն այն բառերը, որոնց իմաստը դու լրիվ հասկանում ես:**

**4. Խուսափի՛ր ավելորդ, աննպատակ բառերից, ինչպես օրինակ. ուրեմն... այսպես ասած... բանը... հասկանում եք... Այս բառերը իզուր տեղը ձգձգում ու խճողում են խոսակցությունը:**



**5. Խոսելիս էլ եղիր այնպես քաղաքավարի, ինչպես վարմունքի մեջ:**

**6. Հարգի՛ր խոսակցիդ: Մի՛ վիրավորիր նրան արհամարհական կամ ծաղրական տոնով:**

**7. Մի՛ կրկնիր քեզ տրված հարցը, եթե դրա անհրաժեշտությունը չկա:**

**8. Խուսափի՛ր կոպիտ ու գռեհիկ բառերից և արտահայտություններից: Խոսիր մաքուր ու հասկանալի լեզվով:**



digitised by A.R.A.R.@

# Մի անգամ...




Ֆլամանդացի հանճարեղ նկարիչ Ռուբենսը Փարիզում ապրած ժամանակ պալատական նկարիչ էր և միաժամանակ վարում էր Ֆրանսիայում անգլիական դեսպանի պաշտոնը, Մի անգամ Անգլիայից դեսպաններ են գալիս Փարիզ: Մեծ նկարիչը նրանց ընդունում է հենց իր արվեստանոցում, առանց ընդհատելու աշխատանքը՝ կտավի առաջ: Այդ տեսնելով անգլիացի դեսպաններից մեկը ուզում է սրամտել.

— Օ՜, պարոն դեսպանը նկարել էլ գիտե...

Ռուբենսը ժպիծաղ տալով պատասխանում է.

-- Սխալվում եք, պարոն դեսպան. պարոն նկարիչը դեսպանություն անել էլ գիտե:

## Երաժշտասեր տիկինը

Մի շատ հարուստ իշխանուհի Փարիզ է գալիս ռուս նշանավոր կոմպոզիտոր և դաշնակահար Անտոն Ռուբինշտեյնի համերգը լսելու համար:

Քաղաքի ամենահայտնի հյուրանոցում տեղավորվելով, նա որոշում է ամբողջ օրը հանգստանալ և թարմ ուղեղով գնալ համերգի...

Բայց հենց որ լույսը բացվում է, կողքի սենյակում մեկը սկսում է դաշնամուրի վրա ուժեղ նվագել: Եվ այնպես երկար ու միապաղաղ, որ տիկինը խիստ զայրանում է: Մի քանի անգամ բռունցքներով խփում է պատին, բայց չի օգնում: Ստիպված կանչում է ծառաներից մեկին և հրամայում իր երկտողը հանձնել հարևան սենյակի այդ անշնորհք դաշնակահարին: Երկտողում գրված էր.

«Պարոն, ես Փարիզ եմ եկել շատ հեռու տեղից, որպեսզի լսեմ մեծ երաժիշտ Ռուբինշտեյնին և խնդրում եմ ձեր կոպիտ և վայրենի թխկթխկոցով չփչացնեք իմ նուրբ լսողությունը»:

Մի քանի րոպե հետո ծառան վերադառնում է և տիկնոջը հանձնում հետևյալ պատասխանը.

«Ներեցեք, տիկին, բայց ցավոք սրտի լավ երաժշտությունը բստեղծվում է մեծ տանջանքներով...

Հարգանքներով՝ ձեզ անծանոթ՝ Անտոն Ռուբինշտեյն»:




Ռուս հայտնի նկարիչ Ֆեդոտովը շատ լավ ձայն ուներ: Այդ մասին քչերը գիտեին: Նա երգում էր, երբ մենակ էր լինում՝ իր տխրությունը փարատելու համար:

Մի անգամ հենված Նևայի գրանիտե պատին, նայում է ջրերին և հուզված երգում:

Նրա ձայնը գրավում է անցորդներին. խումբ բազմություն է հավաքվում: Այդ ժամանակ անցնելիս է լինում նկարչի կատակասեր ընկերներից մեկը: Նա որոշում է առիթն օգտագործել. հանում է գլխարկը և սկսում փող հավաքել: Մինչև երգի վերջանալը, բավականին գումար է հավաքվում, իսկ երբ նկարիչը շուռ է գալիս, բոլորն սկսում են ծափահարել: Նա ամոթխած հազիվ փախչում է բազմությունից:

Այդ ժամանակ մոտենում է ընկերը և գլխարկի միջի գումարը մեկնելով նրան ասում է.

— Ահա քո համերգի վարձը:

Ֆեդոտովը խիստ զայրանում է ընկերոջ կատակի համար, ապա դրամը վերցնելով, սկսում է բաժանել փողոցի աղքատներին:




**Բաժինը վարում է պրոֆեսոր Գիթունյանը**

## ՍՏՈՐՋՐՅԱ ԱԶԴԱՆՇԱՆՆԵՐ

Հիդրոինքնաթիռը թռչում էր Խաղաղ օվկիանոսի վրայով: Հանկարծ շարժիչից ծխախառն բոցեր դուրս եկան: Օդաչուն մեծ դժվարությամբ հազիվ կարողացավ պահել մեքենայի հավասարակշռությունը: Քիչ հետո հիդրոինքնաթիռն արդեն օրորվում էր օվկիանոսի վրա:

Ինչպե՞ս հայտնել կատարված աղետի մասին: Ռադիոկայանը փչացել և շարքից դուրս էր եկել: Բայց ահա անձնակազմի հրամանատարը ջուրը նետեց մի փոքր ռումբ: Մյուս օրը վաղ առավոտյան օգնության հասան և փրկեցին բոլորին: Օվկիանոսի խորքում պայթած այդ փոքր ռումբի ձայնը լսել էին թե՛ Ասիայում, և թե՛ Ամերիկայում:



Գիտնականները հետաքրքիր հայտնագործություն են կատարել: Պարզվում է, որ գոյություն ունի ջրի մի այնպիսի շերտ, որտեղ ցածր ձայներն անգամ տարածվում են հարյուրավոր ու հազարավոր կիլոմետրերի վրա: Ատլանտյան ու Խաղաղ օվկիանոսներում այդ շերտը գտնվում է մոտավորապես 500—1200 մետր ջրի տակ, իսկ բևեռային ծովերում՝ գրեթե մակերեսում:



Ինքնաթիռներն ու նավերը այժմ իրենց հետ վերցնում են փոքր ռումբեր:

Դրանք կառուցված են այնպես, որ պայթում են այդ շերտերի խորքում: Ընդունիչ կայանները անմիջապես գրանցում են ռումբի ձայնը: Իմանալով նրա արագությունը, կարելի է մեծ ճշտությամբ գտնել աղետի վայրը:



digitised by A.R.A.R.@



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

# ԱՄԵՐԻԿԱՑԻՆԵՐԸ ՓԱՐԻԶՈՒՄ

Երկու ամերիկացի թղթակիցներ ճանապարհորդություն էին կատարում Ֆրանսիայում: Թղթակիցները ցանկանում էին դիտել Փարիզի տեսարժան վայրերը և հենց նույն երեկոյան շարունակել ճանապարհը դեպի Լիոն:

Նրանք եղան շատ թանգարաններում, պատկերասրահներում և չնկատեցին, ինչպես մթնեց: Հանկարծ նրանցից մեկը ժամացույցին նայեց և սարսափով բացականչեց.

— Հարրի: Կորած ենք: 20 րոպեից հետո մեր գնացքը շարժվելու է:

— Շտապ մի մեքենա ճարենք, տասը րոպեից մենք կլինենք կայարանում,— ասաց մյուսը:

— Լավ, բայց ինչպե՞ս բացատրենք վարորդին, որ մենք ցանկանում ենք կայարան գնալ:

Այդ իսկապես դժվար էր, քանի որ երկուսն էլ ֆրանսերեն ոչ մի բառ չգիտեին:

— Ես գտա,— հանկարծ բացականչեց Հարրին:— Մենք այսպես կանենք, ես շոգեքարշ կպատկերեմ և փը՛ֆ-փը՛ֆ կանեմ, իսկ դու բարձր կսուլես և տոմսերը ցույց կտաս: Վարորդը անկասկած մեզ կհասկանա:

— Հրաշալի է,— ասաց Թոմը,— ահա և ազատ մեքենա:

Ընկերները վազեցին դեպի մեքենան: Հարրին շոգեքարշ էր պատկերում և փը՛ֆ-փը՛ֆ անում, իսկ Թոմը սուլում էր ու տոմսերը ցույց տալիս: Վարորդը մի ակնթարթ զարմացած նայեց նրանց, ապա բացեց մեքենայի դուռը:

— Մենք փրկված ենք: Դեռևս 12 րոպե ունենք մինչև գնացքի շարժվելը:

Մեքենան սլացավ Փարիզի փողոցներով: 10 րոպե հետո նա կանգնեց հոգեբուժական հիվանդանոցի առջև:

# ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴԸ ԵՎ ՆԱՎԱՍՏԻՆ

Մի ճանապարհորդ նավաստիներից մեկին հարցրեց.

— Պատմեցեք խնդրեմ, ինչպե՞ս մեռավ ձեր հայրը:

— Նա խեղդվել է ծովում,— պատասխանեց նավաստին:

— Իսկ ձեր պապը:

— Նա նույնպես խեղդվել է ծովում:

— Եվ դուք չե՞ք վախենում ծովից:

Նավաստին ոչինչ չպատասխանեց ճանապարհորդին և ինքն իր հերթին հարցրեց նրան.

— Իսկ ինչպե՞ս է մեռել ձեր հայրը:

— Շատ հանգիստ, իր անկողնում,— պատասխանեց ճանապարհորդը:

— Իսկ ձեր պա՞պը:

— Նա նույնպես իր անկողնում է մեռել:

— Եվ դուք չե՞ք վախենում ձեր անկողնուց,— ծիծաղելով հարցրեց նավաստին:


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.:

Տեխ. խմբագիր՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**„Пионер"** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:

ՎՖ 04556. Պատվեր 463. Տիրաժ 6500: Տպագրական 4,5 մամուլ: Ստորագրված է տպագրության 6/V 1958 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91:

Գինը 2 ռ.


digitised by A.R.A.R.@

## Ո՞Ր ՄԱՅՐԱՔԱՂԱՔՆ Է

Սովետական պետություններից մեկի մայրաքաղաքի անվան տառերը եթե տեղափոխենք՝ կստանանք մի մեծ քաղաքի անուն, որը այդ նույն պետության նախկին մայրաքաղաքն է եղել: Գտեք այդ քաղաքները:

## ԳՆԱՑՔՆ ԱՆՑՆՈՒՄ Է ԹՈՒՆԵԼՈՎ

Մեկ կիլոմետր երկարություն ունեցող գնացքը անցնում է թունելով, որի երկարությունը նույնպես մեկ կիլոմետր է: Գնացքի արագությունը մեկ ժամում 30 կիլոմետր է: Որքա՞ն ժամանակում ամբողջ գնացքը կանցնի թունելով:







## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Պուտ-պուտ շորը
Միշտ ճագին,
Ո՞ւմ ոտքերն են
Անճագին:
Վիզը երկար
Ու բարակ,
Ասես լինի
Աշտարակ:

Ս. ԱՐՇԱԿՈՒՆԻ

Թևեր ունի, բույն չէ,
Անիվ ունի, բայց սայլ չէ:

Ս. ԽՍՐԱՅԵԼՅԱՆ



## ՔԱՆԻ՞ ՏԱՐԵԿԱՆ ԵՍ

— Չես ուզում ասել: Դե լավ, այդ դեպքում քո տարիների թիվը բազմապատկիր 2-ով, հետո ավելացրու 5, ստացած գումարը նորից բազմապատկիր 5-ով: Որքա՞ն ստացվեց: 145՞: Ուրեմն դու 12 տարեկան ես: Հետաքրքիր է, չէ՞:

Այժմ բացատրենք.

Եթե դու 12 տարեկան ես, ապա կլինի.

$12 \cdot 2 = 24, \quad 24 + 5 = 29, \quad 29 \cdot 5 = 145$:

Այժմ հարկավոր է վերջին թվանշանը դեն գցել, իսկ մնացած թվից հանել 2: Ստացած թիվը կլինի որոնելի տարիքը:

Անա դու գիտես տարիքը որոշելու գաղտնիքը և այս ձևով կարող ես իմանալ, թե քանի տարեկան են ընկերներդ:

?×2+5×5=

## ԲԱԺԱՆԵԼ ՀԱՎԱՍԱՐ ՄԱՍԵՐԻ

Այս նկարը բաժանեք երկու հավասար և նույն ձևի մասերի այնպես, որ նրանցից յուրաքանչյուրում եղած բոլոր նկարները տարբեր լինեն:



## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ
### «ՊԻՈՆԵՐ» № 4

«ՁԱՅՆԱՎՈՐԴ» 1. Գորիլլա, 2. աղվես, 3. սիրամարգ 4. գայլ, 5. լուսան, 6. ճագարտակ, 7. կողակ, 8. կետ, 9. տատրակ, 10. կոկորդիլոս:

digitised by A.R.A.R.@

# Նկարում են մանուկները



Կակաչներ

ԴԱԼԵՆՑ ԱՐՄԵՆ (13 տարեկան)



Տնակը գետափին

ՉԻՉՅԱՆ ՎԱՐՈՒԺԱՆ (10 տարեկան)



Արարատ

ԷՔՄԵՔՋՅԱՆ ՀՈՎՀԱՆՆԵՍ (11 տարեկան)



Մայիս

ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ ԱՆԱՀԻՏ (6 տարեկան)

Գարուն

ԽԱՉԱՏՐՅԱՆ ՍՈՒՐԻԿ

(5 տարեկան)



digitised by A.R.A.R.@